


№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1951 Թ.

# ՊԻՈՆԵՐ

# ՏՈՆԾԱՌԻ ԵՐԳԸ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ



Հյուր ես եկել այսօր մեզ
Ջա՛ն, տոնածառ լուսերես,
Եվ մենք նորից հավաքվել
Ուրախ շուրջպար ենք բռնել.

Շողա՛, շողա՛ դու պայծառ
Մեր ցնծության տոնածառ:

Քո կատարին միշտ դալար,
Աստղն է շողում լուսավառ,
Քո ճյուղերին շարեշար՝
Նախշուն զարդեր անհամար.

Շողա՛, շողա՛ դու պայծառ
Մեր խնդության տոնածառ:

Քո տակ լույսով ողողված
Ձմեռ պապին է կանգնած,
Եկել է նա լի ձեռքով
Հաղթանակով ու երգով.

Շողա՛, շողա՛ դու պայծառ
Երջանկության տոնածառ:

Բերել է նա մեզ մրգեր,
Խաղալիքներ, նոր գրքեր,
Որ մենք սիրով աշխատենք՝
Միշտ գերազանց սովորենք:

Շողա՛, շողա՛ միշտ պայծառ
Մեր լույս կյանքի տոնածառ:

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆ




*Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1951 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ
(1870—1924)



# ՀԼԿԵՄ 15-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Երևանի Պիոներների շքեղ պալատում արտակարգ եռուզեռ է: Ռեսպուբլիկայի տարբեր շրջաններից այստեղ են եկել երիտասարդ առաջավոր բանվորներ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ, պիոներական ջոկատավարներ, աշակերտներ, երիտասարդ ուսուցիչներ, գրողներ, նկարիչներ, կոմպոզիտորներ: Նրանք Հայաստանի Լենինյան կոմերիտմիության 15-րդ համագումարի դելեգատներն են: Նրանք եկել են պատմելու բոլշևիկների պարտիային, իրենց հարազատ հոր և ուսուցչին՝ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին, թե ինչպես են իրենք ապրում ու աշխատում, ինչպիսի նվաճումներ են ձեռք բերել մեր մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության ասպարեզում. եկել են որոշելու այն խնդիրները, որոնցով պետք է զբաղվեն կոմերիտական կազմակերպությունները առաջիկա տարիներում:

Դեկտեմբերի 27: Համագումարի դելեգատները հավաքվում են տոնականորեն զարդարված դահլիճը: Նրանց մեջ մենք տեսնում ենք Միկոյանի շրջանի անվան երիտասարդ կոլխոզնիկուհի Ֆենիկ Բաղդասարյանին, Իջևանից՝ Զինա Ղազարյանին, որոնց կուրծքը զարդարված է Լենինի շքանշանով և Ոսկե Աստղ մեդալով:

Ուղիղ ժամը 7-ին համագումարը հայտարարվում է բացված: Բոլորը մեկ մարդու նման ոտքի կանգնած բուռն, երկարատև օվացիա են սարքում ի պատիվ մեծ Ստալինի, ի պատիվ բոլշևիկների պանծալի պարտիայի՝ կոմերիտմիության կազմակերպչի ու ղեկավարի:

Երեք օր տևեց համագումարի աշխատանքները: Համագումարը լսեց և քննարկեց Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար ընկ. Հ. Հայրապետյանի հաշվետու զեկուցումը Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին:

Համագումարի դելեգատները մեծ ուշադրությամբ լսեցին Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար ընկեր Գրիգոր Հարությունյանի ճառը: Իր բովանդակալից ճառում ընկեր Հարությունյանը նշեց այն հիմնական հարցերը, որոնց վրա ուշադրություն պետք է դարձնեն կոմերիտական կազմակերպությունները: Ընկեր Հարությունյանը մանրամասն կանգ առավ կոմունիստական դաստիարակության, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատող երիտասարդների որակավորումը բարձրացնելու հարցերի վրա: Նա ասաց, որ վերջին տարիների ընթացքում միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը խիստ աճել է, աճել է նաև ուսուցիչների թիվը, բարձրացել է նրանց պատրաստականությունը: Ուսումնական տարվա սկզբից մեր դպրոցները լիովին ապահովվում են կայուն դասագրքերով. ստեղծված են բոլոր պայմանները կոմունիզմի կրթված, բարձր կուլտուրայի տեր կառուցողներ պատրաստելու համար:

Այնուհետև ընկեր Հարությունյանը խնդիր դրեց կոմերիտական կազմակերպությունների առաջ՝ սիստեմատիկաբար զբաղվել աշակերտության վարքի հարցերով և օգնել ուսուցիչներին աշակերտների դաստիարակության ճիշտ կազմակերպման գործում:

Համագումարում իրենց խոսքն ասացին նաև մայրաքաղաքի պիոներները: Նրանք պահանջեցին կոմերիտական կազմակերպություններից իրենց ջոկատների, դրուժինաների համար ընտրել այնպիսի ջոկատավարներ, որոնք սիրում ու հասկանում են իրենց գործը: Նրանք պահանջեցին կոմերիտական կազմակերպություններից ավելի լայն օգնություն ցույց տալ պիոներական կազմակերպությանը, նրա աշխատանքը է՛լ ավելի հետաքրքիր ու բովանդակալից դարձնելու համար:

— Մենք, պիոներներս,— ասացին նրանք.— հանդիսավոր կերպով խոստանում ենք Լենինյան-Ստալինյան կոմերիտմիությանը, բոլշևիկների պարտիային և հարազատ

հայր և ուսուցիչ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին, սովորել լավ և գերազանց: Խոստանում ենք դառնալ կրթված, կուլտուրական, ուժեղ ու խիզախ հայրենասերներ:

Մեր ռեսպուբլիկայի ամեն մի պիոներ ու դպրոցական պետք է ազնիվ ու նվիրված աշխատանքով ամրապնդի այս խոստումը:

Համագումարի վերջում դելեգատներն ընտրեցին ՀԼԿԵՄ Կենտրոնական Կոմիտե և Վերստուգիչ հանձնաժողով:

Համագումարն ընդունեց որոշում, որը պարտավորեցնում է կոմերիտական կազմակերպություններին՝ ավելի մեծ օգնություն ցույց տալ դպրոցների դիրեկտորներին և ուսուցիչներին դպրոցականների ուսման ու դաստիարակության, գիտակցական կարգապահության ամրապնդման համար: Համագումարը կոմերիտական ու պիոներական կազմակերպություններին տվեց նաև այսպիսի պատվեր՝ բարձրացնել պիոներների և ամբողջ աշակերտության ուսման առաջադիմությունը, վերացնել երկտարեցիությունը:

Պիոներական աշխատանքն էլ ավելի լավ, հետաքրքիր ու բովանդակալից կազմակերպելու համար, համագումարը որոշեց պիոներական ղեկավար աշխատանքի ուղարկել նախաձեռնող, այդ աշխատանքի համար պատրաստված կոմերիտականներին: Համագումարը հանձնարարեց կոմերիտական կազմակերպություններին հասնել այն բանին, որ ամեն մի ջոկատում և դրուժինայում պիոներական կյանքը լինի հետաքրքիր, հավաքույթները լինեն գրավիչ, կազմակերպվեն արշավներ, էքսկուրսիաներ:

Սիրելի պիոներնե՛ր. այժմ ձեր աշխատանքի և ուսման ամենապատասխանատու շրջանն է: Ձմեռային արձակուրդներից թարմացած ու հանգստացած, կազդուրված վերադառնալով դպրոց, դուք նորից պետք է լծվեք գիտելիքներին տիրապետելու գործին, աշխատեք կատարել 15-րդ համագումարի որոշումները: Կոմերիտական կազմակերպությունների ղեկավարությամբ պատրաստվեցեք դառնալու սովետական երկրի կրթված, բազմակողմանի զարգացած հայրենասերներ:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԸ

Դեկտեմբերի 30-ին տեղի ունեցավ Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի առաջին կազմակերպական պլենումը:

Պլենումը Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընտրեց ընկ. Գ. Ա. Տեր-Ղազարյանին, երկրորդ քարտուղար՝ ընկ. Մ. Ա. Զուրաբյանին:

ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարներ ընտրվեցին՝ պրոպագանդայի գծով ընկ. Գ. Ա. Գալոյանը, կադրերի գծով՝ ընկ. Ս. Հ. Վարդանյանը, դպրոցների գծով՝ ընկ. Գ. Ս. Հակոբյանը:

Պլենումը Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի անդամներ ընտրեց ընկ. ընկ. Գ. Ա. Տեր-Ղազարյանին, Մ. Ա: Զուրաբյանին, Գ. Ա. Գալոյանին, Ս. Հ. Վարդանյանին, Գ. Ս. Հակոբյանին, Հ. Մ. Մարտիրոսյանին, Վ. Օսկինին, Լ. Գ. Ղարիբջանյանին և Ա. Վ. Խաչիկյանին:

Պլենումը «Ավանգարդ» թերթի պատասխանատու խմբագիր հաստատեց Ա. Վ. Խաչիկյանին. «Ստալինեցի» խմբագիր՝ Ա. Մ. Եվանգուլովին և «Պիոներ կանչի» խմբագիր՝ Ս. Մ. Մնացականյանին:

Պլենումի աշխատանքներին մասնակցում էին Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար ընկեր Գր. Ա. Հարությունյանը և ՀԿ(բ)Պ Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Զ. Գրիգորյանը, Բ. Գրիգորյանը, ՀԿ(բ)Պ Կենտկոմի պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական օրգանների բաժնի վարիչ ընկ. Հ. Մարտիրոսյանը:

# ԸՆՏԱՆԻՔ

(Հատված դրամայի առաջին գործողության առաջին պատկերից)

Ի. ՊՈՊՈՎ

Նկ. ՀՐ. ՌՈՒԽԿՅԱՆԻ

*1886 թվականը։ Սիմբիրսկ քաղաքում։ Ամառվա վերջն է։ Պարտեզ։ Ձախից՝ միահարկ տան տեռրասն է։ Բեմի խորքում՝ քարափ։ Քարափի եզրին՝ նստարան։ Տեռրասից ոչ հեռու երկու ճամպրուկ և մի զամբյուղ է դրված գետնին։ Բոլոր նշաններից երևում է, որ ինչ-որ մեկը տանից մեկնում է։ Ներսից դաշնամուրի նվագ է լսվում։ Բեմի վրա է Վլադիմիրը։ Նա մենակ նստած է քարափի եզրին գտնվող նստարանին։ Ծնկներին բացված գիրք կա, բայց նա, խոր մտածմունքի մեջ ընկած, գրքին չի նայում։*

*Մի կապոց գիրք ձեռքին, տնից շտապ դուրս է գալիս Ալեքսանդրը։ Հենց որ տեռրասից իջնում է՝ դաշնամուրի նվագը դադարում է։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ.* (Տան կողմը) *Ո՛չ, դու նվագիր, մամոչկա, նվագիր մինչև վերջ։*

*Նվագը վերսկսվում է։ Ալեքսանդրը գրքերը դնում է ճամպրուկի վրա և սկսում է կապել, մերթ ընթ մերթ նայելով այն կողմը, որտեղ նստած է Վլադիմիրը։ Վլադիմիրն առաջվա նման խորասուզված է իր մտքերի մեջ։ Մտնում է Օլգան՝ կապած բանկաները ձեռքին։*

*ՕԼԳԱ.* (Բանկաները ճամպրուկի մոտ դնելով) *Եվ ինչպե՞ս պիտի մինչև Պետերբուրգ հասցնես, Սա՛շա, քո օղակավոր որդերով լցված այս բանկաները. սարսափելի է։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ. Իսկ այլ կերպ, Օլենկա, չի լինի։ Համալսարանում դրանք ինձ պետք են գալու դիպլոմային աշխատանքս ավարտելու համար։*

*Օլգան գնում է։ Մտնում է Աննան՝ մի կապոց գիրք ձեռքին։ Դնում է գրքերը Ալեքսանդրի բերած կապոցի կողքին։*

*ԱՆՆԱ. Մի շաբաթ էլ մնայիր այստեղ՝ ու բոլորը կավարտեիր...*

*Ալեքսանդրը մերժման շարժում է անում։ Բեմի ետևից՝ Մարիա Ալեքսանդրովնայի ձայնը՝ «Անյա»։ Աննան շտապ հեռանում է։*

*ՎԼԱԴԻՄԻՐ.* (Կտրուկ ելնելով տեղից՝ մոտենում է Ալեքսանդրին։ Իր առաջին խոսքը նա այնպիսի տոնով է ասում, որ հասկանալի է դառնում, թե դա շարունակությունն է եղբայրների միջև հենց նոր տեղի ունեցած տաք վիճաբանության, երբ շատ բան արդեն ասվել է, իսկ այժմ միայն եզրակացություններ են հանվում)։ *Ո՛չ, Սա՛շա, քո սխալն անհռելի է։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ. Նայած ինչպես կմոտենաս։ Դու ելնում ես նպատակահարմարությունից, փաստերից, տրամաբանությունից, մտքից...*

*ՎԼԱԴԻՄԻՐ. Նո՛ւ և լավ է. իսկ դո՞ւ։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ. Սրտից։ Հիշո՞ւմ ես, մեր մանկության ժամանակ քաղաքային այգում Կարամզինի հուշարձանի մոտ մի չցանկապատած ջրհոր կար... Մեզ պատվիրել էին, որ զգուշանանք... Իսկ ես սիրում էի մոտենալ, պառկել ու նայել դեպի այն խավար խորությունը...*

*ՎԼԱԴԻՄԻՐ. Այդ լավ ’էր մանկության ժամանակ, իսկ հիմա՞։ Ուրիշ ի՞նչ պիտի տեսնեիր այնտեղ դու հիմա, բացի քո սեփական արտացոլումից։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ. Հենց թեկուզ այդպես։ Ես շարունակ էլ ինքս իմ ներսն եմ նայում ու հարց տալիս՝ ունե՞մ արդյոք բարոյական իրավունք հանգիստ սրտով լսելու անվերջ պատմություններ խարազանված գյուղացիների մասին, ստորացված այլազգիների և ուսանողական այլանդակված կյանքերի մասին։*

*ՎԼԱԴԻՄԻՐ. Իսկ ես, կարծում ես, հանգի՞ստ սրտով եմ լսում։ Բանն այդ չէ, Սա՛շա։ Պետք է գտնել արմատական միջոցներ՝ արմատական հաղթանակի համար։ Զսպվածությունն է, որ քեզ պակասում է... Երկաթե զսպվածությունը։*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ. Իմ ձեռքն անհապաղ հարված է պահանջում...*

ՎԼԱԴԻՄԻՐ. Իսկ իմ միտքը ուրոնում է...

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Դարձյալ... միտքը։

ՎԼԱԴԻՄԻՐ. Նու, դա արդեն ցնդաբանություն է, Սաշա։ Ուրեմն, քո կարծիքով, միտքը կանգ է առել, ինչ է։ Բոլոր պատասխանները տրված են արդեն. բոլոր ճանապարհները գտնված։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Լսիր, Վլադիմիր։ Նրանք, ովքեր գործել են մեզանից առաջ, սրբություն են ինձ համար։

ՎԼԱԴԻՄԻՐ. Այդ դեպքում ո՞վ եք դուք ինքներդ։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Շարունակողներ...

ՎԼԱԴԻՄԻՐ. Ո՛չ, ներվային ընդօրինակողներ. ոչ ավել, բնավ ոչ ավել։

*Բեմի ետևից զանգակների ձայն։ Մոտեցավ կառքը։ Ալեքսանդրը և ապա Վլադիմիրն ականջ են դնում։*

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Անվանիր մեզ՝ ինչպես կամենաս. բայց ես այնուամենայնիվ մեկնում եմ։

ՎԼԱԴԻՄԻՐ. Այդ դեպքում վեճն ավարտված է... Եվ մեր ճանապարհները... բաժանվում են։

*Ներս են վազում Մանյաշան, Դմիտրին, նրանց ետևից գալիս են Աննան և Օլգան։*

ԵՐԵԽԱՆԵՐԸ. Սաշա, գնո՞ւմ ես...

— Գնաս բարով, Սաշա...

— Գնա՛ս բարո՛վ... (Գրկում են Ալեքսանդրին)։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Դե՛, բավական է... խեղդեցիք... բաց թողեք ինձ, երեխանե՛ր...

ԱՆՆԱ. Ժամանակն է։ (Երեխաներին) Գնացեք առաջ։

ՄԱՆՅԱՇԱ. (Գնալով դեպի Ալեքսանդրը) Ես քեզ կսպասեմ դարբասի մոտ։

ԴՄԻՏՐԻ. Ես էլ, ես էլ... (Գնում են)։

ԱՆՆԱ. (Ալեքսանդրին) Դու հիմա բոլորի՞ն հրաժեշտ տվիր. Վոլոդիայի՞ն էլ։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Մնաս բարով, Վոլոդյա։

ՎԼԱԴԻՄԻՐ. Գնաս բարով։

*Վլադիմիրը վերցնում է ճամպրուկներից մեկը և պարտեզից դուրս է գնում։ Օլգան նույնպես վերցնում է իրերից մեկն ու հետևում նրան։*

ԱՆՆԱ. (Ալեքսանդրին). Այդքան սառն էր Վոլոդյան քեզ հետ. ինչու։ Ի՞նչ է պատահել ձեր միջև։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Գիտես, Անյա... մեր Վոլոդյան... խելոք մարդ է, բայց...

ԱՆՆԱ. Մարդ։ Այսինքն՝ տղա...

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Նա տասնյոթի մեջ է։ Եվ այս ամենը շատ ավելի լուրջ է, քան դու կարծում ես... Ես ու Վոլոդյան մեր հայացքներով բոլորովին բաժանվեցինք իրարից։

ԱՆՆԱ. Ահա թե ինչ։ Ընդհանրապես իմ սկզբունքն է. տարբեր հայացքների դեպքում ոչ մի մտերմություն. բայց տղայի մոտ և խոր համոզմունքնե՞ր։ Չափազանցնում ես, Սաշենկա։

*Տնից դուրս է գալիս Մարիա Ալեքսանդրովնան։*

ՄԱՐԻԱ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎՆԱ. Սաշենկա...

ԱԼԵՔՍԱՆԴՐ. (Ընդհատելով) Մամոչկա, աղաչում եմ... Դա որոշված է... մեկնում եմ... և չի հարկավոր։

ՄԱՐԻԱ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎՆԱ. Բայց ինչի՞ համար։ Ինչու. ի՞նչ նպատակ ունի այդ հանկարծական մեկնումը։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Ոչինչ, մամոչկա, ոչինչ։

ՄԱՐԻԱ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎՆԱ. Ծածկամիտ ես դու, Սաշա։

*Մտնում է Եգորը։*

ԵԳՈՐ. Ալեքսանդր Իլյիչ, գնալու ժամանակն է. այնպես որ, ասում եմ, լուսով տեղ հասնենք։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Լավ, Եգո՛ր, գնանք։

ԵԳՈՐ. (Իրերը վերցնելով) Ինչ որ կա սա՞ է։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Դա է։ (Եգորը գնում է). Մի՛ տխրիր, մամոչկա։ Կգա գարունը, և մենք բոլորս նորից այստեղ կհավաքվենք։

*Ներս է վազում Վլադիմիրը։ Եվ հանկարծ տեսնելով դեպի մայրը խոնարհված Ալեքսանդրին, կանգ է առնում։ Մի վայրկյան եղբայրները նայում են իրար. մայրն էլ՝ նրանց։*

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Գրկախառնվենք, Վոլոդյա։

ՎԼԱԴԻՄԻՐ. Գրկախառնվենք, Սաշա։

(Գրկախառնվում են)։

ՄԱՐԻԱ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎՆԱ. (Ալեքսանդրին). Մենք քեզ մի քիչ կուղեկցենք։

ԱԼԵՔՍԱՆԴՐ. Ո՛չ, շատ եմ խնդրում, մա՛մոչկա: Մի՛ ուղեկցիր: (Հրաժեշտ է տալիս մորը և գնում է: Նրա ետևից գնում է Վլադիմիրը):

Բեմի ետևից ձայներ.—«Գնաս բարով», «Ցտեսություն»:

Մարիա Ալեքսանդրովնան նայում է դեպի այն կողմը, ուր գնաց Ալեքսանդրը: Լսվում է զանգակների և կառքի մեկնելու ձայնը:

ՄԱՐԻԱ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎՆԱ. Գնաց...

Ներս է մտնում Վլադիմիրը և մոտենում է մորը, քնքուշ շարժումով դուրս է բերում նրան քարացած վիճակից և առաջնորդում դեպի տեռրասը: Գալիս են Աննան, Օլգան, Դմիտրին, Մանյաշան: Բոլոր երեխաները շրջապատում են մորը:



... Այնուհետև Ուլյանովների տանը հանդիպում են Վլադիմիրն ու իր դասընկեր՝ Լուզնեցովը, որը հաղորդում է գիմնազիստների որոշ մասի Վոլոդիայի դեմ լինելու մասին: «Արժե՞ր մի ինչ-որ չուվաշի համար աղմուկ բարձրացնել», ասել են նրանք: Վլադիմիրը վրդովվում է:

Ապա ներս է մտնում գիմնազիայի ուսուցչուհի Կաշկադամովան։ Նա խիստ հուզված է, հազիվ է կարողանում խոսել։ Կաշկադամովան հայտնում է, որ գիմնազիայի վարչությունը որոշել է Վլադիմիրին հեռացնել դպրոցից այն բանի համար, որ իբր նա վիրավորել է գիմնազիան և նրա դիրեկտորին։ Սակայն իրականում այդպես չէ։ Վլադիմիրը բողոքել է չուվաշ երիտասարդի մարդկային արժանապատվությունը նվաստացնելու դեմ։ Նա բոլոր դասատուների առաջ խոստացել է պարապել չուվաշ Օգորոդնիկովի հետ, որին դիրեկտորը մերժել է պատրաստել էքստերն քննության, որովհետև նա դրա համար միջոցներ չունի և մանավանդ այլազգի է։

Օգորոդնիկովի և Վլադիմիրի հանդիպման հուզիչ տեսարանից հետո գալիս են ուսուցիչներ՝ Գորսկին և Զերնենկոն։ Նրանք խնդրում են Վլադիմիրի մորը՝ Մարիա Ալեքսանդրովնային՝ համոզել, որ որդին խզի կապերը չուվաշի հետ, որովհետև վերջինս ոստիկանության մոտ վատ համբավ ունի։ Սակայն Վլադիմիրը մինչև վերջ մնում է անդրդվելի։

Ցուրտ երեկո է։ Վառվում է վառարանը։ Ուլյանովների սեղանատանը նստած են Վլադիմիրը և Օգորոդնիկովը։ Նրանք պարապում են։ Չուվաշ տղան արդեն կարողանում է կարդալ լատիներեն։ Այդ ժամանակ գալիս է Կաշկադամովան։ Վլադիմիրը չէր ուզենա նորից տեսնել նրան. բայց ուսուցչուհին Վլադիմիրին հանձնում է Պետերբուրգից ստացված մի ծրար։ Նամակից պարզվում է, որ օղակավոր որդերի մասին գրած Ալեքսանդրի շարադրությունը, Մենդելեևի ու Սեչենովի կողմից շատ բարձր է գնահատվել։ Վլադիմիրը հպարտանում է եղբոր հաջողությամբ։ Այդ զգացումը կրկնապատկվում է, երբ նա իմանում է, որ Ալեքսանդրը մասնակցել է Դոբրոլյուբովի հիշատակին նվիրված ցույցին։ Բայց նա լցվում է բուռն ատելությամբ դեպի ցարական իշխանությունը, որի գործակալները ձերբակալել են իր եղբորը Թագավորի դեմ մահափորձ կատարելու համար։ Այդ լուրը ցնցում է Ուլյանովների ընտանիքը. բայց Ուլյանովները չեն վհատվում։ Վլադիմիրի մայրը որոշում է իսկույն մեկնել Պետերբուրգ՝ որդուն տեսնելու։

Մորթապաշտ ու վախկոտ մարդիկ այլևս չեն այցելում Ուլյանովներին, երկյուղ կրելով, որ իրենց կմեղադրեն քաղաքական ցույցերին մասնակցելու մեջ։ Միայն ձկնորս Եգորն ու ծերունի շախմատիստ Կուզմա Իվանովիչն են, որ չեն դադարում լինել այդ համերաշխ ընտանիքի լավագույն բարեկամները։

Հաջորդ տեսարանը պատկերում է Պետերբուրգի ոստիկանական դեպարտամենտի դիրեկտոր Դուրնովոյի ընդունարանը։ Այստեղ Մարիա Ալեքսանդրովնան ցանկանում է տեսակցել իր որդու հետ։ Սակայն ցարական ոստիկանության պաշտոնյա Դուրնովոն ձգտում է օգտագործել այս հանգամանքն իր չարագործ նպատակների համար։ Նա ուզում է իմանալ Ալեքսանդրի մյուս ընկերների տեղը. բայց խիզախ կինը գուշակում է Դուրնովոյի միտքը և մնում անհողդողդ։

... Երեկո է։ Վոլգայի ավազոտ կղզիներից մեկի վրա բոցկլտում է խարույկը։ Նրա շուրջը հավաքվել են ձկնորս Եգորը, Օգորոդնիկովը և ուրիշները։ Նրանք լսում են Վլադիմիրին։ Նա բացատրում է, որ Ալեքսանդրի ճանապարհով այլևս չի կարելի գնալ, որ պայքարի այդ ձևը ճիշտ չէ։

... Սիմբիրսկ քաղաքում լուրեր են տարածվում, թե իբր ցարական կառավարությունը ներում է շնորհել Ալեքսանդրին։ Վլադիմիրը վրդովվում է ասելով, թե՝ «Դա գրպարտություն է։ Այո, գրպարտություն... Իմ եղբայրը միշտ արհամարհել է ստուն ու վախկոտությունը...»։ Գալիս է Մարիա Ալեքսանդրովնան։ Նա հայտնում է Ալեքսանդրի մահվան լուրը։ Վլադիմիրի սրտում բռնկվում է վրեժը։

Անցնում են տարիներ։ Ռուսաստանը ապրում է փոթորկոտ օրեր։

Վլադիմիր Իլյիչ Լենինը ղեկավարում է Ռուսաստանի մարքսիստական խմբակները։ Պետերբուրգում, Մոսկվայում, Յարոսլավլում, Օմսկում և շատ ուրիշ քաղաքներում տարածվել է պրոլետարիատի առաջնորդ Լենինի «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» աշխատությունը։ Ցարական կառավարության ոստիկանները գլուխները կորցրած փնտրում են գրքի հեղինակին։ Սակայն բանվորները թաքցնում են իրենց սիրելի ղեկավարին։ Թշնամուն մեծ դժվարությամբ հաջողվում է ձերբակալել Լենինին. բայց դա կարճ է տևում։ Բանվորները բանտից փախցնում են ռևոլյուցիայի մեծ առաջնորդին։

Վերջին տեսարանում պատկերված է «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» խմբի անդամներից մեկի բնակարանը։ Հավաքված բանվորներն անհամբեր սպասում են Լենինին։ Երևում է Վլադիմիր Իլյիչը։ Բանվորների դեմքերն ուրախությունից փայլում են։ Նրանք Լենինին հաղորդում են, որ Անդրկովկասում քաղաքական ցույցերը ղեկավարում է Ստալինը։ Լենինը հանգամանորեն բացատրում է, որ սկսված պայքարը պետք է շարունակել մինչև վերջ և ստեղծել նոր և հզոր պարտիա։

Բանվորները երգում են ռևոլյուցիոն մի երգ։

Այսպես է վերջանում Ի. Պոպովի «Ընտանիք» դրաման, որը պատկերում է երիտասարդ Լենինի կյանքն ու պայքարը ցարական բռնակալների դեմ։

«Ընտանիք» դրաման մեծ հաջողությամբ բեմադրվում է Սովետական Միության բոլոր թատրոններում։

# ՁԵԶ ՈՂՋՈՒՅՆ

Սիրելի պիոներներ և դպրոցականներ.

1951 թվի Նոր տարին սովետական ժողովուրդը դիմավորեց աշխատանքային նոր հաջողություններով։

Նոր տարին մեծ պարտավորություններ է դնում նաև ձեզ վրա։

Բոլշևիկների պարտիան, Սովետական կառավարությունը և մանուկների սիրելի բարեկամ մեծ Ստալինը ձեզ համար ստեղծել են բոլոր պայմանները սովորելու համար։ Կառուցված են լուսավոր, ընդարձակ դպրոցներ, պիոներական հոյակապ պալատներ։ Դուք պետք է արդարացնեք ձեզ վրա դրված հույսերը։ Դեռ առաջին կիսամյակում պիոներական դրուժինաներն ու ջոկատները համառորեն պայքարում էին խորը և կայուն գիտելիքների համար։ Դպրոցներից շատերը երկրորդ քառորդում զգալի հաջողություններ ունեցան։ Երևանի № 28, Ձերժինսկու, Կիրովի, Պուշկինի անվան, Լենինականի № 35, 39, Բերիայի անվան, Ստեփանավանի, Ախուրյանի շատ դպրոցներում ավելանում է «2» գնահատական չունեցող պիոներական ջոկատների թիվը։ Շատ ջոկատներ պայքարում են «3» չունենալու համար։

Պիոներները եռանդուն կերպով մասնակցում են մեր երկրում կատարվող բոլոր աշխատանքներին։ Անցյալ ամառ Հայաստանի պիոներներն ու դպրոցականները հավաքել և կոլխոզներին են հանձնել 111 հազար կիլոգրամ հասկ, մեծ քանակությամբ դեղաբույսեր, պտղատու և դեկորատիվ ծառերի սերմեր։ Պատանի պիոներներն իրենց ուսուցիչների ղեկավարությամբ հետաքրքրական ճանապարհորդություններ են կատարել և ուսումնասիրել են հայրենի երկիրը, նրա անսպառ հարստությունները, Ստալինյան նորակառույցները։ Շատ ջոկատներ արդեն եղել են մեր սիրելի առաջնորդ Ստալինի ծննդավայրում՝ Գորիում։ Պիոներական ջոկատները սերտ կապ են պահպանում Մոսկվայի, Ուկրաինայի, Լատվիայի, Վրաստանի, Ադրբեջանի և մյուս ռեսպուբլիկաների ջոկատների ու դպրոցների հետ։ Նոր տարում՝ 1951 թվականին ավելի մեծ գործեր ունեն կատարելու մեր պիոներներն ու դպրոցականները. Ամեն մի աշակերտ ու պիոներ, ամեն օր դասերը լավ պատրաստած պետք է գնա դպրոց, ուշադիր լսի ուսուցիչներին, լրիվ և ճիշտ կատարի նրանց տված տնային հանձնարարությունները, կարդա ուսուցչի նշած գեղարվեստական գրքերը։ Ամեն մի պիոներ պետք է աշխատի բարձր պահել իր ջոկատի, իր դպրոցի պատիվը։ Օղակավարները, ջոկատավարները, պիոներական ակտիվը մինչև վերջը պետք է կատարեն ՀամԼԿԵՄ 11-րդ համագումարի պահանջը, օգնեն ուսուցիչներին աշակերտների առաջադիմությունը բարձրացնելու գործում։ Անհրաժեշտ է ավելի շատ թեմատիկ հավաքույթներ ունենալ։ Հավաքույթների ժամանակ պետք է պիոներներին պատմել մեր մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի կյանքի ու գործունեության, սովետական գիտության, տեխնիկայի, գրականության նվաճումների մասին։ Անհրաժեշտ է նաև, որ հասարակական աշխատանքը ճիշտ և նպատակահարմար ձևով բաշխված լինի բոլոր պիոներների և դպրոցականների մեջ։

Երկրորդ կիսամյակի ամենակարևոր խնդիրներից մեկն էլ առաջին օրվանից համառ և վճռական պայքար մղելն է երկրորդ տարին մնալու դեմ։ Ամեն մի դպրոցի կոմերիտական և պիոներական կազմակերպություն պետք է ձգտի հասնելու այն բանին, որ դպրոցում չլինի ոչ մի երկրորդ տարեցի։

Այս Նոր տարին շատ ուրախ օրեր է ունենալու։ Ձեր և ձեր ծնողների ամենից ուրախ օրը այն օրը կլինի, երբ դուք հաջողությամբ կփոխադրվեք հաջորդ դասարան։ Դրան պետք է ձգտել հենց այսօրվանից։ Սովորեցեք անսպառ եռանդով, պայքարեցեք «չորս» և «հինգ» գնահատականների համար։ Դա կլինի ձեր պատասխանը բոլշևիկների պարտիային, սովետական կառավարությանը և մեծ Ստալինի անսահման հոգատարությանը։

# Պարտքի զգացումը

Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Ամառային զով առավոտներից մեկն էր։ Ծաղկաձորի պիոներական ճամբարների փողերի գիլ հնչյունները, միաժամանակ զարթնող հազարավոր մանուկների ուրախ կանչերն ու ճիչերը, ննջարաններից ու վրաններից դուրս վազող պիոներների երգերը, ազդարարեցին ճամբարային կյանքի առօրյան։

Զարթնեց Ծաղկաձորը, զարթնեց մանուկների ուրախ աշխարհը։ Վաղորդյան շողերից զարթնող թռչունների պես անտառից ու պուրակներից, այգիներից ու պարտեզներից, ամեն մի ծառի տակից ու թփի միջից դուրս թռան մանուկները։ Հրապարակները լցվեցին ուրախ երեխաներով։ Սկսվեցին լիցքային վարժությունները։ Ամեն կողմից լսվում էին հրահանգիչների կարուկ հրահանգները և համաչափ քայլող պիոներների ոտնաձայները։

Կյանքն իր բոլոր կողմերով երևում է այստեղ։ Պիոներների մի մասը աշխատում է, մի մասը կարգի է բերում ճամբարի բակը և ֆիզկուլտ գործիքները, մյուսները պատրաստվում են էքսկուրսիա գնալու. հերթապահները մաքրում են ննջարանների ու վրանների շրջակայքը, մարզանքից ու լվացվելուց հետո բոլորը նախաճաշելու են շտապում. ամենուրեք իրենց պոստերում կանգնեցին ժամապահները։

Այստեղ հանգստացող բոլոր մարդիկ աստիճանաբար հարմարվում են պիոներական ճամբարային ռեժիմին։ Կարծես ամբողջ Ծաղկաձորը վերածվում է պիոներական ճամբարի։ Առավոտյան աշխույժ կյանքը չի թողնում երկար քնել։ Ամենածույլ ու քնկոտ մարդիկ անգամ սովորում են առավոտը շուտ վեր կենալ։ Դեռ ավելին, նրանք պիոներների պես մարզանքներ են անում, շփվում են սառը ջրով, միանում են իրենց շրջապատում բազմաթիվ խմբերով խաղացող պիոներների հետ ու խաղում են նրանց նման, ապրում են մանուկների կյանքով, աշխուժանում են մանուկների պես։ Ծաղկաձորում հանգստացողները ճիշտ են ասում, թե՝ ով ուզում է նոր մանկություն ապրել, թող գա այստեղ՝ Ծաղկաձոր։

Այդ առավոտը, թարմ ու շաղոտ կանաչների մեջ ընկերոջս հետ երկար ման գալուց հետո մենք մոտեցանք պիոներական ճամբարներից մեկի դարբասին։ Դարբասի ներսի կողմը կանգնած էր արևից սևացած, թխադեմ մի գեղեցիկ պատանի։ Նիզակաձև փայտի մեջտեղից ամուր բռնած նա այնպես զգաստ էր կանգնած, որ կարծես մարտահրավերի էր սպասում։ Այս ու այն կողմը դիտող, աշխույժ շարժումներ կատարող այդ պատանին անց ու դարձողների ուշադրությունն էր գրավում։ Նա իրենից ներկայացնում էր մարմնացած ուշադրություն. նա հիացած էր իր պարտականության կատարմամբ։ Նա նման էր իր դերով տարված այն դերասանին, որն ամեն ինչ մոռացել էր, բացի իր դերից։

Ես ու ընկերս մոտեցանք դարբասին։ Ընկերոջս ակնարկից ես իմացա, որ նա ցանկանում է այդ զգաստ ժամապահին անհանգստացնել։

— Արի սրան փորձենք,— ասաց ընկերս, — տեսնենք ինչպես է կատարում իր պարտականությունը։

— Թույլ կտա՞ս ներս մտնել,— հարցրեց ընկերս զգաստ պատանուն։

— Ո՛չ, ինձ պատվիրված է ոչ ոքի ներս չթողնել,— պատասխանեց ժամապահն ինքնագոհ և ինքնավստահ եղանակով։

Նրա դեմքի վրա կարելի էր կարդալ այն գոհունակությունը, որ առաջացրեց այս խոսակցությունը։ Նա մտածում էր. էլ ի՞նչ ժամապահ է ինքը, որ չպատասխանի մարդկանց հարցերին, չարգելի կամ ներս չթողնի նրանց, չզեկուցի ճամբարի պետին պատահած այս կամ այն դեպքի մասին, չտեղեկացնի նրան, որ այս ինչ մարդը խնդրում է թույլատրել իրեն ճամբար մտնել։

— Ուզո՞ւմ եք ներս գնալ,— շարունակեց ժամապահը,— ես կտեղեկացնեմ ճամբարի պետին, որ նա ձեզ ներս թողնի։

— Ո՛չ, չեմ ուզում,— պատասխանեց ընկերս,— ես ուզում եմ, որ դու ներս թողնես, ի՞նչ կարիք կա տեղեկացնել պետին, դու լավ տղա ես, գիտեմ, որ մեզ ներս կթողնես։

— Ես չեմ կարող ներս թողնել, ես իրավունք չունեմ,— պատասխանեց ժամապահը։

— Իրավունքը ո՞րն է,— ասաց ընկերս,— ուզենաս՝ կթողնես։

Ընկերոջս այս խոսքերից պատանին ավելի աշխուժացավ։ Նրա պայծառ աչքերի մեջ երևում էր իրար խառնված ժպիտն ու զարմանքը։

— Չեմ կարող ներս թողնել,— համարյա թե ծիծաղով պատասխանեց ժամապահը։

— Այդ դեպքում ես ուժով ներս կմտնեմ,— ասաց ընկերս և, մարտական դիրք ընդունելով, խոժոռեց դեմքն ու ձգվեց դեպի առաջ։

— Ես ձեզ չեմ թողնի,— հուզված ասաց պատանին։

Պատանին ևս ընդունեց մարտական դիրք, նա մի փոքր մոտեցավ ընկերոջս և շեշտակի նայեց նրա աչքերի մեջ։ Մանկական այդ գեղեցիկ դեմքին չսազող լրջությունն ու խոժոռությունը անբնական ու ծիծաղելի չթվաց։ Նա տարված էր իր պարտքի կատարման զգացումով, և այնքան բնական էր արտահայտվում նրա դիմադրությունն իր հակառակորդին, ինչպես այն մարդու, որ կռվում է իր կյանքն ահեղ վտանգից պաշտպանելու համար։ Ես մոռացա, որ իմ ընկերը կատակով էր անում այս բոլորը։ Սակայն կատակով սկսած այդ գործը լուրջ բնույթ ստացավ։ Փոքրիկ տղան ամբողջ մարմնով մի բռունցք էր դարձել։ Նա անդրդվելի էր։ Նա պատրաստ էր կռվի բռնվել իրենից շատ՝ ուժեղ մարդու հետ։ Նա իր պարտքն էր կատարում։

«Պետք է միջամտել,— մտածեցի ես,— այլապես այս դեպքը կավարտվի վատ հետևանքով»։

Ես մոտեցա նրանց։ Ընկերս զգաց դրության լրջությունը և անմիջապես ետ գնաց։ Հուզմունքից դողացող տղան այժմ ինձ էր նայում մի տեսակ երախտագիտության զգացմունքով։ Նա շնորհակալ էր, որ ես կանխեցի անհաճելի դեպքը։ Նրա աչքերը փայլում էին արցունքի վճիտ ցողով։ Վրդովված պատանու գեղեցիկ դեմքը մի տեսակ դուրեկան ու քաղցր հուզմունք առաջացրեց իմ մեջ։ Մեր հայացքները հանդիպեցին իրար, ես զգացի, որ նա էլ նկատեց իմ հուզմունքը։

«Պարտքի զգացմունքը մարդուն դարձնում է համարձակ, քաջ և ուժեղ», մտածում էի ես։

Այս պարտաճանաչ պատանին իր պարտքը կատարեց պիոներական ճամբարի ժամապահի պոստում. պարտքի զգացումի տեր այս տղան պատրաստվում է իր պարտքը կատարելու կոմունիզմի մեծ կառուցման աշխատանքի մեջ և իր չքնաղ հայրենիքի պաշտպանության գործում։ Մեր հայրենիքը հերոսների հայրենիք է։ Ահա թե ինչպես են ծնվում այդ հայրենիքի զավակները, սովետական հերոս մարդկանց հետնորդները։

Մենք պատրաստվում էինք հեռանալ, երբ ժպիտն երեսին մեզ մոտեցավ ճամբարի պետը և հրավիրեց ներս։ Մենք ուրախությամբ ընդունեցինք նրա հրավերը, մանավանդ, որ նրան պետք է պատմեինք իր ճամբարի հիանալի ժամապահի՝ այս պարտաճանաչ պատանու մասին։

# ՍԻՐԵԼԻ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ



Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

1950 թվականի դեկտեմբերի 31-ին լրացավ սովետական անվանի բանաստեղծ Նաիրի Զարյանի ծննդյան հիսուն տարին:

Մեր հայրենիքում ճանաչում ու սիրում են նշանավոր բանաստեղծին: Նա մեր ծիծաղկոտ, երջանիկ կյանքի երգիչն է: Ո՞ր պիոները չի կարդացել Նաիրի Զարյանի բանաստեղծությունները ու պոեմները՝ «Ռուշանի քարափը», «Դյուցազնագիրքը», «Սաքո Միկինյանը» և «Հացավան» վեպը:

Մեր տոնական հանդեսներում ու երեկույթներում ամեն տեղ հնչում է մեծ Ստալինին նվիրված նրա հրաշալի բանաստեղծությունը:

Նաիրի Զարյանը այսպիսի գեղեցիկ բանաստեղծություններ շատ ունի: Հայրենական պատերազմի ժամանակ, երբ մեր Հայրենիքը վտանգի մեջ էր, երբ ֆաշիստները հարձակվել էին մեր երկրի վրա, Զարյանը տասնյակ կրակոտ բանաստեղծություններ գրեց: Նա ինքը մեկնեց ռազմաճակատ և այնտեղ իր հրաշալի բանաստեղծություններով ոգևորում ու դեպի մարտ էր կոչում մեր քաջարի մարտիկներին: Նրանց մեջ արտահայտված է մեր ժողովրդի սերն ու երախտագիտությունը մեծ զորավարի՝ ընկեր Ստալինի նկատմամբ, արտահայտված է բանաստեղծի ջերմ հայրենասիրությունը:

Ահա թե մի բանաստեղծության մեջ ինչքա՜ն լավ է արտահայտված այդ բոցավառ զգացմունքը.

«Դու քաղցր ես, հող իմ հայրենի,
Չկա քեզնից պայծառ անուն,
Բայց վտանգի ահեղ ժամին,
Երբ սպառնում է թշնամին,
Դու ավելի ես քաղցրանում»:

Մեր պարտիան, մեր կառավարությունը բարձր են գնահատել մեր բանաստեղծին: Նա պարգևատրվել է բարձր պարգևներով՝ Լենինի, Հայրենական պատերազմի և «Պատվո նշան» շքանշաններով:

Հիմա էլ Նաիրի Զարյանը շատ լավ գործեր է գրում: Պատերազմից հետո նա վերամշակեց ու հրատարակեց «Հացավան» վեպը, որի մեջ նկարագրված է մեր կոլխոզնիկների աշխատանքն ու երջանիկ կյանքը: Գրեց «Աղբյուրի մոտ» պիեսը, «Արմենուհի» պոեմը և բազմաթիվ բանաստեղծություններ:

Սիրելի բանաստեղծն այժմ հիսուն տարեկան է: Բայց մենք նրանից դեռ բազմաթիվ լավ գործեր ենք սպասում:

Երկար կյանք ու հաջողություն ենք ցանկանում մեր բանաստեղծին:

*Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ*

# ՇՆՈՐՀԱՎՈՐ ՆՈՐ ՏԱՐԻ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Շնորհավոր քո նոր տարին,
Մեր մեծ Ստալին, հայր իմաստուն,
Դու տալիս ես մեր աշխարհին՝
Երջանիկ կյանք, խաղաղություն:

Սովետական ազատ երկրի
Քաջ բանվորներ մեր փառավոր,
Շենքն եք կերտում կոմունիզմի,
Ձեր նոր տարին շնորհավոր:

Կառուցել եք շքեղ շենքեր
Շինարարներ մեր թանկագին,
Կառուցել եք գործարաններ,
Շնորհավոր ձեր նոր տարին:

Հանքափորներ մեր հարազատ,
Հանքանյութ եք երկրին տվել,
Հայրենիքն է դարձել անպարտ,
Շնորհավոր նոր տարին ձեր:

Կոլխոզնիկներ մեր եռանդուն
Առատ բերք եք տվել երկրին,
Ուժ ու եռանդ չեք խնայում,
Շնորհավոր ձեր նոր տարին:

Դուք տալիս եք մանուկներին
Գիտելիքներ բազմատեսակ,
Շնորհավոր ձեր նոր տարին,
Ուսուցիչներ բազմավաստակ:

Հայրենիքի ծաղկածիծաղ
Ժիր մանուկներ մեր բախտավոր,
Դուք սիրում եք ուսում ու խաղ,
Ձեր նոր տարին շնորհավոր:

Հայրենիքը մեր անսասան
Պաշտպանում եք զոր ու գիշեր,
Քաջ մարտիկներ սովետական,
Շնորհավոր նոր տարին ձեր:

Պլաններդ հսկայական
Կատարել ես ժամանակին,
Հայրենի՛ք իմ սովետական,
Շնորհավոր քո նոր տարին:



# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԸ

Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ
(Տեխնիկական գիտությունների թեկնածու)

*Աշխարհագրության դասատու ընկեր Պողոսյանն այսօր զանգը տալուց առաջ դասարան մտավ և գրատախտակին ու պատերին փակցրեց Սովետական Միության քարտեզն ու մի շարք նկարներ։*

*Երբ զանգը հնչեց և բոլորս նստեցինք մեր տեղերը, նա սկսեց պատմել կոմունիզմի մեծ կառուցումների մասին։*

Նկ. Հ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

*— Մեր երկիրը հարուստ է փայտով, ածուխով, նավթով, այրվող գազերով, և այլ վառելանյութերով։ Բայց էլեկտրակայանների համար ամենից էժան «վառելանյութը» «սպիտակ ածուխն» է՝ ջուրը, որի միջոցով էլեկտրականություն են ստանում։*

*Ջրով աշխատող էլեկտրակայաններ այժմ մեր երկրում շատ կան։ Նրանք էներգիա*







են մատակարարում մեր արդյունաբերությանը, քաղաքներին, գյուղերին, տրանսպորտին։

Բայց մեր երկրի պահանջները շատ մեծ են։ Մենք էլեկտրիֆիկացիայի պետք է ենթարկենք մեր ողջ ժողովրդական տնտեսությունը, որպեսզի կոմունիզմի հաղթանակին ավելի մոտեցնենք։ Դրա համար էլ մեր կառավարությունը որոշել է 1951 թ. մինչև 1956 թ. Վոլգա գետի վրա խոշոր հիդրոկայաններ կառուցել։ Առաջինները լինելու են Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոհանգույցները։ Դրանք ունենալու են մեծ ջրամբարներ, որոնք ստեղծվելու են ջրի հոսանքի առաջ պատվար կառուցելու միջոցով։

Այդ ջրամբարների ջրի մի մասը օգտագործվելու է էլեկտրական էներգիա ստանալու, իսկ մյուս մասը՝ Վոլգայի շուրջն ընկած լայնատարած դաշտերը ջրելու համար։

Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոկայանների տված էներգիան մեր երկրում գոյություն ունեցող բոլոր կայանների էներգիայից երկու և կես անգամ ավելի պետք է լինի։ Դրանք կլինեն ամենահզոր էլեկտրակայաններն աշխարհում. ավելի հզոր, քան Իտալիայի, Շվեյցարիայի ու Շվեդիայի բոլոր կայանները միասին։ Ջերմային էլեկտրակայաններում այդքան էներգիա ստանալու համար մի տարում անհրաժեշտ կլիներ 20 հազար երկաթուղային գնացք վառելանյութ։

Կույբիշևի և Ստալինգրադի կայաններից էլեկտրական էներգիան կանցնի հազարավոր կիլոմետրներ։ Այդ էներգիայի մի մասը կտրվի Մոսկվայի խոշոր գործարաններին։

Ջրամբարների ջրերով ոռոգվող հողերի տարածությունը հինգ և կես անգամ կավելանա։ Դա Նեղոս գետի ջրով ոռոգվող հողերից 8 անգամ ավելի է, իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգների ջրվող հողերից՝ երկու և կես անգամ։

Կույբիշևի և Ստալինգրադի ջրամբարներից ամեն մեկը մոտավորապես Սևանա լճի չափ կլինի։ Կույբիշևի ջրամբարն այնքան պետք է տարածվի, որ Վոլգայի ափից 5 կիլոմետր հեռու գտնվող Կազան քաղաքը, առափնյա քաղաք դառնա։

Հաշվել են, որ այս կառուցումների հետևանքով Վոլգայից տարեկան 75 միլիարդ խորանարդ մետր ջուր պակաս է թափվելու Կասպից ծովը։ Որպեսզի ծովը չցամաքի, մտածում են Հյուսիսային Դվինա գետից մինչև Վոլգա գետը ջրանցք կառուցել և լրացուցիչ ջուր բաց թողնել։ Բայց կա նաև մի ուրիշ նախագիծ։ Կասպից ծովը լրացուցիչ ջուր է ստանալու Սիբիրի Օբ գետից մինչև Արալյան լիճը ձգվող նավարկելի մեծ ջրանցքի և Ամու-Դարյա—Կրասնովոդսկ ոռոգման ջրանցքի միջոցով։

Վերջինս կկառուցվի 1951—1956 թվականներին։ Նա կոռոգի Թուրքմենստանի անջրդի հողերը և Կարակումի ավազուտները։ Նա ջուր կտա նաև Արևմտյան Թուրքմենստանի բնակավայրերին։

Թուրքմենստանի ջրանցքով ջրվող հողերում մշակելու են բամբակ, տնկելու են այգիներ ու անտառներ։

Սա դեռ բոլորը չէ։ Մոտակա հինգ տարում կառուցվելու են նաև Հարավային Ուկրաինայի ու Հյուսիսային Ղրիմի ջրանցքները։ Ինչպես նաև Դնեպր գետի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայանը։

Քանի՜ քանի՜ այդպիսի կառուցումներ պետք է իրականանան մեր Հայրենիքում։

— Ավելի մե՞ծ,—հարցրեց Նորիկը։

— Այո, ավելի մեծ, քան Կույբիշևի ու Ստալինգրադի հանգույցները։ Օբ գետի




*վրա նախատեսնվում է՝ հինգ տարուց հետո կառուցել այնպիսի մի էլեկտրակայան, որը 2 անգամ ավելի հզոր լինի, քան Կույբիշևի ու Ստալինգրադի էլեկտրակայանները միասին վերցրած։*

*Մենք բոլորս հիացած էինք։ Թվում էր, թե ընկեր Պողոսյանը հեքիաթ է պատմում։*

*— Միայն Կույբիշևի հանգույցում, — շարունակեց ընկեր Պողոսյանը, — 150 միլիոն խորանարդ մետր հողային աշխատանք է կատարվելու։ Եթե այդքան հողը բարձենք վագոնների վրա, նրանց շարանը չորս անգամ կպտտվի երկրագնդի շուրջը։ Բետոնային և երկաթբետոնային աշխատանքները մոտ 6 միլիոն խորանարդ մետր են լինելու։*

*Ստալինգրադի հանգույցը մի քանի անգամ ավելի աշխատանք է պահանջում։*

*Կույբիշևի հիդրոհանգույցի հողային աշխատանքները կատարվելու են ջրի օգնությամբ։ Խողովակից բխող ջրի ուժեղ շիթը հողը կքանդի և կտեղափոխի ցանկացած ուղղությամբ։ Այսպիսի սարքավորումը հիդրոմոնիտոր է կոչվում։ Հիդրոմոնիտորն օրական կատարում է 5 հազար բանվորի աշխատանք։ Ջրանցքները փորելու համար արդեն գործում են ինքնագնաց մեծ էքսկավատորներ։ Այդպիսի էքսկավատորի 14 խորանարդ մետր ծավալ ունեցող շերեփը միանգամից մի քանի ավտոմեքենա հող կարող է փորել և դուրս թափել։*

*Այդ կառուցումներում մի օրվա ընթացքում 1000 խորանարդ մետր բետոնային աշխատանք է կատարվելու։ Անհրաժեշտ կլինի մի ժամում բետոնի համար մատակարարել 2 երկաթուղային գնացք խիճ, ցեմենտ և ավազ։*

*Այս վիթխարի աշխատանքները հնարավոր է կատարել միայն նոր, հզոր շինարարական մեքենաներով։ Այդպիսի մեքենաներ արտադրելու համար այժմ հատուկ գործարաններ են կառուցվում։*

*Մեր երկրի շատ գիտնականներ և ինժեներներ հիմա ուսումնասիրում և նախագծում են Կույբիշևի և Ստալինգրադի կառուցումները։ Բազմաթիվ աշխատավորներ պատրաստակամություն են հայտնել աշխատելու կոմունիզմի մեծ կառուցումներում։*

*Ընկեր Պողոսյանը վերջացրեց իր զրույցը։*

*Դասը վերջացավ, բայց ուսուցիչը դեռ երկար ժամանակ մանրամասն պատասխանում էր մեր հարցերին։*

*Հետևյալ դասամիջոցներին ամբողջ դասարանը խոսում էր կոմունիզմի վիթխարի կառուցումների մասին։*






# ՑՆԾԱԼԻ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Դեկտեմբերի 2-ին Բերիայի անվան դըպրոցում արտակարգ աշխուժություն էր տիրում։ Բաղրամյանի անվան դրուժինայի բոլոր պիոներները կարծես տոնի էին պատրաստվում։ Դասամիջոցներին շատերը վազում էին պիոներական սենյակ տեղեկանալու համար, թե ինչ նորություններ կան։ Դասերը վերջացրած պիոներները կրկնում էին երգերը, պարերն ու բանաստեղծությունները, որ այդ երեկո պետք է արտասանեին։ Թատերական խմբակը գրական մոնտաժի վերջին փորձերն էր կատարում։



Գեներալ Բաղրամյանը պիոներների հետ

Երկրորդ հերթին սովորող աշակերտները սովորականից ավելի շուտ էին եկել դպրոց։ Նրանք էլ զբաղված էին ակումբը կարգի բերելով. մեկը նկարներն էր զարդարում, մյուսն ընկերների սարքած մակետներն ու մոդելներն էր դասավորում սեղանների վրա. խմբագրական կոլեգիայի մի երկու անդամն էլ փակցնում էին դրուժինայի հատկապես այդ օրվա առթիվ լույս ընծայած «Ստալինյան ուղի» պատի թերթը։

հատակին դեռ թափված էին ծաղկաթերթիկներ ու տերևներ։ Երևում էր, որ այդտեղ ծաղկեփնջեր էին կապել։

Դպրոցի դիրեկտորը, կոմերիտական կազմակերպության քարտուղարը և ուսուցիչներից ոմանք էլ հաճախ իջնում էին պիոներների մոտ և ստուգում նրանց կատարածը, խրախուսում, ուղղում սխալները, խորհուրդներ տալիս։

Բոլորը տոնական տրամադրության մեջ էին, բոլորն էլ ցանկանում էին, որ այդ օրը առանձնապես հետաքրքիր ու հանդիսավոր լինի դրուժինայի հավաքը։ Չէ՞ որ կատարվելու էր պիոներների նվիրական ցանկություններից մեկը՝ նրանք հանդիպելու էին Ստալինյան զորավար, Սովետական Միության Հերոս, Հայրենական Մեծ պատերազմի խիզախ գեներալներից մեկի՝ Ի. Ք. Բաղրամյանի հետ։

Այդ էր պատճառը, որ ամբողջ դրուժինան այդպես եռանդուն կերպով պատրաստվում էր հավաքին, որի թեման էր՝ «Սովետական Հայաստանի 30 տարին»։

*Հավաքից հետո պիոներները երկար ժամանակ խոսում էին այդ օրվա ցնծալից ժամերի, պանծալի գեներալի և իրենց ընկերների ելույթների մասին։ Մինչև այժմ էլ նրանց մտքում պայծառ է մնացել այդ երջանիկ հանդիպման ամեն մի վայրկյանը, գեներալի ասած ամեն մի բառը։*

*Թե ինչպես դիմավորեց Բաղրամյանի անվան դրուժինան հայ ժողովրդի հերոսին, թե ինչպես անցավ այդ երեկոն, պատմում են այն նամակները, որ խմբագրությունն ստացել է Երևանի Բերիայի անվան դպրոցի դրուժինայի պիոներներից։*

*Տպագրում ենք այդ նամակները։*

## ԻՆՉՊԵՍ ԴԻՄԱՎՈՐԵՑԻՆՔ

Մենք շատ էինք ուզում հանդիպել հայ ժողովրդի հարազատ զավակ, Սովետական Միության Հերոս, Բանակի գեներալ ընկեր Բաղրամյանի հետ։ Վերջապես մեր ցանկությունը կատարվեց։ Սովետական Հայաստանի երեսունամյակի կապակցությամբ մեր դրուժինան կազմակերպեց հավաք։ Սպասում էինք ընկեր Բաղրամյանին։

Ահա դպրոցի մուտքի մոտ հնչեց ավտոմեքենայի ձայնը։ Քիչ հետո շեմքում երևաց ընկեր Բաղրամյանը։ Նրա լայն կուրծքը զարդարված էր շքանշաններով։ Բոլորս նրան դիմավորեցինք ցնծագին բացագանչություններով և սկսեցինք ծափահարել։ Մեր դեմքերին փայլում էր երջանկության ժպիտը։ Ընկեր Բաղրամյանը հաղթական քայլերով մտավ ակումբ և ողջունեց մեզ։

Մենք ուշադրությամբ լսում էինք ընկեր Բաղրամյանին, որ մեզ պատմում էր Սովետական Հայաստանի նվաճումների մասին։

... Վերջում նա ավելացրեց.

— Ես ինձ շատ երջանիկ եմ զգում, երբ տեսնում եմ, թե ինչպես հայ ժողովուրդը, սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում, ապրում է ուրախ և խաղաղ կյանքով։

Մեզ վրա ուժեղ տպավորություն թողեցին ընկեր Բաղրամյանի այն խոսքերը, որ ուղղված էին մեզ, պիոներներիս և դպրոցականներիս. «Ապրեք երեխեք, մեզանից ավելի երջանիկ ապրեք»։

Մենք հպարտ ենք, որ հանդիպում ունեցանք մեծ Ստալինի աշակերտ, գեներալ Բաղրամյանի հետ, որն իր ուժերն ու ընդունակությունները չի խնայել մեր հայրենիքի փառքի ու հզորության համար։

*ՄԱՐԻԵՏՏԱ ՂԱՐԻԲՅԱՆ*

*(Բերիայի անվան դպրոցի Բաղրամյանի անվան դրուժինայի պիոներ)*

## ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՕՐԸ

Պիոներների և ուսուցչական կազմի բուռն ծափահարությունների և ուռաների տարափի տակ ընկեր Բաղրամյանը բարձրացավ և նստեց նախագահության սեղանի մոտ։ Դժվար է նկարագրել այդ հուզումնալի ակընթարթը։ Պիոներները և ուսուցիչները հայացքները չէին հեռացնում նրանից։

Դրուժինայի խորհրդի նախագահ Լիլիկ Բաղալյանը հավաքը բացված հայտարարեց և խոսեց Հայաստանում սովետական կարգերի հաստատման երեսնամյակի մասին։ Դրանից հետո ողջույնի խոսք ասաց դպրոցի դիրեկտոր ընկեր Ա. Տոնոյանը։ Ապա խոսքը տրվեց Բանակի գեներալ ընկեր Բաղրամյանին։ Բոլորս ոգևորությամբ և հուզմունքով էինք լսում նրա ամեն մի բառը։

Նա սկզբում ողջունեց մեզ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 30-րդ տարեդարձի առթիվ, խոսեց թե ինչպիսի թըշվառության մեջ էր գտնվում հայ ժողովուրդը մինչև 1920 թվականը և ինչ երջանկության է հասել նա այսօր։ Ընկեր Բաղրամյանը պիոներներին պատվիրեց, որ էլ ավելի լավ սովորեն, բարձրացնեն ուսման որակը, որպեսզի ապագայի համար պիտանի մարդիկ դառնան։

Մեր հավաքը վերջացավ գրական-գեղարվեստական մեծ բաժնով։ Այդ ուրախ օրը մեզանից ոչ որ չի մոռանա։

*ԿԱԼԻԳՍԵ ՄԱՐԿՈՍՅԱՆ*

*(Բերիայի անվան դպրոցի Բաղրամյանի անվան դրուժինայի պիոներ)*

# ՄԵՐ ԳՐԱԿԱՆ ՄՈՆՏԱԺԸ

Մեր թատերական խմբակը ընկեր Խաչիկյանի ղեկավարությամբ նախապատրաստվում էր տոնելու Սովետական Հայաստանի 30-րդ տարեդարձը: Մենք անչափ ուրախացանք, երբ իմացանք, որ մեր դրուժինայի հավաքում ներկա է լինելու Բանակի գեներալ ընկեր Բաղրամյանը: Եվ ահա եկավ այդ ուրախ օրը:

Ընկեր Բաղրամյանի ելույթից հետո պիոներները գեղեցիկ համազգեստներ հագած և վզկապներ կապած բարձրացան բեմ, Նրանք երգում էին «Հայրենիք» երգը:

Մեր գրական-գեղարվեստական բաժնի սկզբում նվագի մեղմ հնչյունների տակ, արտասանվեց Թումանյանի «Գութանի երգը», որտեղ տրված է մեր ժողովրդի չարքաշ կյանքի պատկերն անցյալում: Այնուհետև գրական մոնտաժի կատարողներից մեկը՝ Կ. Մարկոսյանը բարձր ձայնով արտասանում է ընկեր Ստալինի խոսքը. «Ինչ գնով էլ լինի փրկել Հայաստանը»: Մի քանի պիոներների ելույթներից հետո վերջանում է գրական մոնտաժի առաջին մասը:

Դրանից հետո ցուցադրվում են բելոռուսական, ռուսական և այլ ժողովուրդների պարեր: Ամենից լավ պարեցին Օֆելյան, Ջուլիետան, Սեդան և Լիդան:

Ռիմա Սարգսյանի ելույթով սկսվեց մոնտաժի երկրորդ բաժինը, որտեղ ցույց էր տրվում հայ ժողովրդի մասնակցությունը Հայրենական մեծ պատերազմին: Խումբը երգեց «Բաղրամյան» երգը: Մոնտաժի վերջին մասը նվիրված էր խաղաղության պաշտպանությանը:

Ահա շարքից մի քայլ առաջ է գալիս 4-րդ դասարանի աշակերտուհի Ելենա Սարգսյանը՝ փոքրիկ տիկնիկը ձեռքին և արտասանում է Ն. Զարյանի «Խաղաղության աղավնին»: Ելենան այնպես էր արտասանում, որ բոլոր հանդիսականները հուզվեցին: Ամբողջ դահլիճը թնդում էր ծափահարություններից: Ապա խումբը երգում է «Դեմոկրատական երիտասարդության հիմնը»:

Օֆելյա Գևորգյանը արտասանում է Շիրազի «Մեծ Ստալինին» հայտնի բանաստեղծությունը: Դահլիճը նորից թնդում է ծափերից:

Ընկեր Բաղրամյանը շատ գոհ մնաց մեր ելույթներից:

ՋՈՒԼԻԵՏԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Բերիայի անվան դպրոցի
թատերական խմբակի անդամ)



Ի. Ք. Բաղրամյանը ողջունում է պիոներներին

# ԶՐՈՒՅՑ ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ՄԱՍԻՆ

Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Ո՛վ չի մեզնից սիրով անգին
Փարվել անուշ իր տատիկին,
Սպասել լուռ ու անհամբեր
Որ նա պատմի նոր հեքիաթներ:
Ո՞վ չի մեզնից, բբենու տակ
Լսել զրույց, երգ ու կատակ,
Ու քուն մտել այգում կանաչ,
Կրծքին սեղմած մի փունջ կակաչ:
Իմ լավ բալիկ, մի զրույց էլ
Այսօր ես եմ ուզում պատմել:

*
* *

Եղել է, կա ու կմնա
Մի մեծ քաղաք, որին հիմա
Ամեն մի տեղ, ամեն մի մարդ
Անվանում է Լենինգրադ.
Այստեղ մի օր մեծ Լենինն է
Հոկտեմբերյան կրակ վառել,
Որի շնչից ջերմացել են
Կյանքի կարոտ միլիոն սրտեր.
Ստալինն է մարդկանց տարել
Դեպի պայքար, դեպի արև,
Որ մենք ապրենք իմ լավ բալիկ
Այսպես ուրախ ու երջանիկ:
Եվ այն օրից, երբ կյանքը նոր
Հաղթանակեց, դարձավ հզոր,
Տարիները հերթով անցան
Հաղթ քայլերով մեծ կառուցման,
Մեր ձեռքերով բարձրացան վեր
Անթիվ շենքեր, գործարաններ,
Լենինգրադը ծաղկեց, աճեց,
Դարձավ շքեղ, ավելի պերճ:
Այդպես հոսեց կյանքը վարար,
Կյանքը հարուստ ու շինարար...
Սակայն ամռան կիզիչ մի օր
Ֆաշիստները առած բոլոր
Տանկերն իրենց, զորքեր ու զենք,
Արշավեցին դեպ արևելք,
Եվ զավթելով շատ երկրներ
Հասան մինչև երկիրը մեր:
Եկան, եկան, օղակեցին

Քաղաքը այս հերոսածին,
Որին հիմա ամեն մի մարդ
Անվանում է Լենինգրադ:
Երեք ամառ, երեք ձմեռ
Նենգ թշնամին թափեց ռումբեր,
Ամեն կողմից կրակ բացեց,
Ամեն տեղից մահ ուղարկեց,
Քաղցը ծեծեց ամեն մի դուռ,
Չկար ո՛չ լույս, ո՛չ հաց, ո՛չ ջուր:
Բայց ոչ մի մարդ փոքր թե մեծ
Չվհատվեց օղակի մեջ:
Լենինգրադը դարձավ նակատ,
Լենինգրադը կանգնեց հաստատ,
Երեք ձմեռ, երեք ամառ
Կռիվ մղեց անհավասար:
Հայրենիքն էր օգնում անվերջ
Լենինգրադին օղակի մեջ,
Ե՛վ հյուսիսից, և՛ հարավից,
Բաքվից, Օմսկից, Երևանից,
Ամեն կողմից օգնում էին
Հերոսական պաշտպաններին:
Քանի անգամ զայրույթով լի
Ֆաշիստները գրոհ տվին,
Գործի դրին բյուր «Մեսսերներ»,
Հազար, հազար ռումբ ու տանկեր,
Բայց ոչ մի մարդ փոքր թե մեծ
Չվհատվեց օղակի մեջ:
Ջոկատները պիոներական
Հրշեջների զգեստ հագած,
Գիշեր-ցերեկ զգաստ էին
Երկնասլաց տանիքներին,
Որ օդային տազնապ խփեն,
Որ հանգցնեն հրձիգ ռումբեր,
Որ ծերերին օգնեն, արագ
Հասնել մինչև ապաստարան:
Մի ուրիշ խումբ, որ կոչվում էր
Խիզախ ու քաջ «որոնողներ»*),
Անտառներից հեռո՜ւ հեռո՜ւ
Սահնակներով փայտ էր բերում:

**) «Որոնողներ» էին կոչվում այն պիոներները, որոնք օղակման ծանր տարիներին փայտ էին հասցնում բնակչությանը:*

Այսպես դարձած մի սիրտ արի
Տանում էին վիշտ ու կարիք,
Եվ ոչ մի մարդ, փոքր թե մեծ
Չէր վհատվում օղակի մեջ:
Բարիկադ էր ամեն փողոց,
Ամեն մի տուն՝ կյանքի ամրոց:
Այսպես անցավ երեք տարի
Սովի, կյանքի ու պայքարի:
Եվ հունվարյան մի առավոտ
Տեղաց կրակ, պայթյուն, որոտ,
Ելավ մարտի ազատաբեր,
Լենինգրադյան բանակը մեր.
Հազար տեղից արկեր բռան,
Հազար տեղից տանկեր ելան,
Ելան, բռան ամպերից վեր
Անթիվ, անթիվ ինքնաթիռներ:
Եվ թշնամին դողաց ահից,

Փորձեց թաքնվել, փրկվել մահից,
Բայց արկերով նրան գտանք
Թե երկնքում, թե գետնի տակ:
Լենինգրադը, որ ամիսներ
Ատելության թուրն էր սրել
Անցավ հզոր մի հարձակման
Հանուն վրեժի ու հատուցման,
Հանուն մեր մեծ հայրենիքի,
Հանուն ազատ կյանքի, երգի:
Հանուն նրան, իմ լավ բալիկ,
Որ աշխարհում բոլոր մարդիկ
Ապրեն ոչ թե վշտով, վերքով,
Այլ երջանիկ, ուրախ կյանքով:
Ահա այսպես կռվեց, հաղթեց
Հերոսական քաղաքը մեծ,
Որին հիմա ամեն մի մարդ
Անվանում է հերոս քաղաք:

---



*Մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները անսահման ոգևորությամբ դիմավորեցին Սովետական կառավարության իմաստուն որոշումները Վոլգա գետի վրա հսկայական հիդրոկայաններ կառուցելու, Թուրքմենական, Ղրիմի և Հարավային Ուկրաինայի ջրանցքների կառուցման մասին:*

*Ուկրաինայի Վիննիցայի մարզի աշխատավորները նույնպես բուռն հետաքրքրություն են հանդես բերում կոմունիզմի մեծ կառուցումների նկատմամբ: Գորկու անվան կուլտուրայի և հանգստի պարկում դրված են մեծադիր քարտեզներ, որոնք ցույց են տալիս հիդրոէլեկտրակայանների հզորությունը, ապագա ջրանցքների ճանապարհները: Կոմունիզմի մեծ կառուցումների պլաններին ծանոթանալու համար, այստեղ են գալիս ոչ միայն մեծահասակները, այլև դպրոցականները:*

*Նկարում՝ աշակերտները քարտեզների մոտ: 17-րդ արական միջնակարգ դպրոցի ուսուցչուհի Ե. Յա. Կորնիյչուկն աշակերտներին պատմում է Կախովկայի հիդրոկայանի շինարարության մասին:*

*(ՏԱՍՍ-ի ֆոտոխրոնիկա)*

# ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

Դ. ԳԱՋԱՋՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Դիկը և Ջեննին փոքրիկ եղևնին կանգնեցրել էին սեղանին և անհամբեր սպասում էին մայրիկի վերադարձին։*

*Մայրը խոստացել էր նրանց համար խաղալիքներ բերել։*

*— Մայրիկն ուշացավ,— անհանգիստ ասաց Ջեննին։*

*— Այո, ուշացավ,— կրկնեց Դիկը։*

*Եվ նրանք մոտեցան լուսամուտին ու վարագույրը բարձրացնելով նայեցին փողոց։*

*Նոր տարվա առաջին երեկոն էր։ Նյու-Յորքի գլխավոր փողոցները ողողված էին լույսերով։ Ուոլլ-Ստրիտի հարուստները զվարճանում էին։ Նրանց բոլորի տներում նոր տարվա տոնածառեր կային։ Դիկը և Ջեննին իջեցրին վարագույրը և տխուր հեռացան լուսամուտից։*

*Վերջապես եկավ մայրը։*

*— Որտե՞ղ են խաղալիքները,— ասաց փոքրիկ Ջեննին, փաթաթվելով մոր փեշերին։*

*Դիկը նկատելով մոր տխրությունը բոլորովին չխոսեց խաղալիքների մասին. Իսկ մայրը գրկեց նրանց ու համբուրեց։*

*— Ինչո՞ւ ես տխուր, մայրի՛կ,— հարցրեց Ջեննին սրբելով մոր արցունքները։*

*— Այսօր ինձ վտարեցին գործարանից, Ջեննի՛, ես այժմ գործազուրկ եմ...*

*— Գործազո՞ւրկ,— սարսափած բացականչեցին երեխաները։*

*— Այո՛, ինձ վտարեցին գործարանից Ստոկհոլմի կոչը ստորագրելու համար,— ասաց մայրը։— Ես գրեցի, որ աշխարհի բոլոր մայրերն ու երեխաները խաղաղություն են ցանկանում։ Իսկ պատերազմը, Ջեննի՛, կբազմապատկի ձեզ նման որբերի թիվը... Եվ նրանք կապրեն քաղցած ու մերկ, ցուրտ խրճիթներում... Ա՜խ, փոքրիկնե՛րս, մարդկանց խաղաղություն է պետք...*

* * *

*Դիկն անկողնում պառկած երկար ժամանակ չէր կարողանում քնել։ Նրա փոքրիկ ուղեղում անընդհատ պտտվում էին մոր խոսքերը՝ պատերազմի ու խաղաղության մասին... Պատերազմը նրանից խլել էր հորը։ Հետո նա զրկվել էր դպրոցից։ Հիմա էլ նա քաղցից տանջվում է, ցրտից դողդողում։*

*— Դու դեռ չե՞ս քնել, Դի՛կ,— ձայն տվեց Ջեննին։*

*— Ո՛չ, ես մտածում եմ խաղաղության մասին,— ասաց Դիկը և դառնալով քրոջ կողմը շշնջաց.— Բեռի Ջոնսոնը երեկ ասում էր՝ «Մենք կպայքարենք խաղաղության համար...»*

*— Իսկ ի՞նչպես են պայքարում, Դի՛կ,— հարցրեց Ջեննին...*



* * *

*Բացվում էր մեծ քաղաքի աղմկալից առավոտը։ Դիկն ու Ջեննին արագ քայլերով գնում էին քաղաքի լայն փողոցով։ Ջեննին իր վերարկուի տակ պահել էր կարմիր ներկով լի մի շիշ։ Այդ ներկը նրանց համար ճարել էր հարևան բանվոր Ջոնսոնը. իսկ Դիկը ձեռքում բռնել էր մի հաստ վրձին, որով մի ժամանակ հայրիկը գեղեցիկ նկարներ էր նկարում։*

*Նրանք Ջոնսոնի խորհրդով գնում էին մի կարևոր առաջադրանք կատարելու։*

*— Սպասիր,—ասաց Դիկը։*

*Նրանք կանգ առան այն գործարանի առաջ, որտեղ մայրիկն էր աշխատում։*

*— Այնտեղ ոստիկան է շրջում,—շշնջաց Ջեննին։*

*— Սպասենք՝ մինչև նա թեքվի փողոցի անկյունը,—ասաց Դիկը։*

*Ոստիկանն անփույթ քայլերով հասավ փողոցի անկյունը և թեքվեց դեպի աջ։*

*Դիկը քրոջ ձեռքից վերցրեց կարմիր ներկով լի շիշը, ամրացրեց պատին, վրձինը սեղմեց ատամների արանքը և գործարանի դռան կից սյունի վրայով վեր մագլցեց։ Նա հասավ այնտեղ, ուր փայլուն ցուցափեղկի վրա գրված էր «Գործարան Հեյլի»։*

*Ջեննին ներքևում հսկում էր։ Դիկը վերևում, ձախ ձեռքով գրկել էր սյունը, իսկ աջով, ցուցափեղկի վրա, մեծ կարմիր տառերով գրում էր՝ «Խաղաղություն»։*

*Ջեննին սուլեց։ Փողոցի անկյունում մի ոստիկան երևաց։ Այդ ժամանակ Դիկը վերջացնելով իր գործը, արագությամբ ցած սահեց։ Երեխաներն անհետացան ձախակողմյան փողոցում։*

*— Հիմա հազարավոր մարդիկ կկարդան՝ «խաղաղություն» բառը,—բերկրանքով ասաց Ջեննին։*

*— Այո, թող բոլորը կարդան,—ավելացրեց Դիկը։*

*Նրանք առաջ գնացին։*

*Ահա Նյու-Յորքի մեծ թատրոնի աֆիշաների հսկայական ցուցափեղկը, որի վրա գրված է՝ «Այսօր», իսկ ներքևը՝ բոլորովին դատարկ է։ Դիկի մեջ մի միտք ծագեց. նա խիզախորեն առաջ սլացավ ու «Այսօրի» տակ գեղեցիկ մեծատառերով գրեց՝ «ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ»։ Ստացվեց այսպիսի մի բան.*

ՆՅՈՒ-ՅՈՐՔԻ ՄԵԾ ԹԱՏՐՈՆ

*Ա Յ Ս Օ Ր*

**ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ**

*Դիկն ու Ջեննին իրենց հաջողությունից ուրախացած մոռացել էին քաղցն ու սառնամանիքը։ Նրանք հեռացան թատրոնի մոտից։*

*Առավոտյան մարդիկ զարմանքով՝ կարդում էին թատրոնի նոր ներկայացման աֆիշան և շտապում էին տոմս ձեռք բերել։ Թատրոնի դրամարկղի առաջ հերթ էին կանգնել տղամարդիկ, կանայք, ծերերն ու երեխաները...*



# ԱՅՍ ԲՈԼՈՐԸ ՄԵՐՆ Է

ՍՈՂՈՄՈՆ ՕՐԲԵԼՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Օհան պապը ամենամեծ մարդն է Ղափանում։ Նա 120 տարեկան է, ունի հիսուն թոռ, յոթանասուն ծոռ։ Մեծ տղան՝ Դավիթը 94 տարեկան է, իսկ փոքր աղջիկը՝ 60 տարեկան։ Նրա թոռներից ու ծոռներից շատերը ինժեներներ են, գյուղատնտեսներ, բժիշկներ, ուսուցիչներ և հանքափորներ։

Հունվարի մեկին նրա մի խումբ հարազատներ նվերներով գնացին իրենց սիրելի պապիկի նոր տարին շնորհավորելու։ Պապը շատ ուրախացավ։ Նա սկսեց հարցուփորձ անել իր հարազատների ուսման ու մտադրությունների մասին։

Ծոռները՝ Կաքավիկը, Տաթևիկը և Լոռիկը խնդրեցին պապին, որ նա իր անցյալի մասին մի բան պատմի։

— Ի՞նչ պատմեմ, բալեք, սև են էն օրերը, ինչո՞ւ եք հիշեցնում...

— Չէ, պապի՛, հինն ուսումնասիրում ենք, որ նորը լավ կառուցենք։

— Ձեր խոսքից դուրս գալը դժվար է։ Որ ասում եք, կպատմեմ։— Պապը շոյեց սպիտակ ու երկար մորուքը և սկսեց...։

— Սրանից հարյուր տարի առաջ հորս խորհրդով երեք եղբայրս էլ բանվոր դարձանք նոր բացված հանքում։

Հիմա էլ, որ հիշում եմ, քթիցս ծուխ է դուրս գալիս։ Ո՛չ ժամացույց կար, ո՛չ որոշված ժամանակ։ Մթնով գնում էինք հանքը աշխատելու. երբ հանքից դուրս էինք գալիս, դարձյալ մութն էր լինում։ Հանգստի օր ասած բանը չկար։ Աշխատանքի գնալիս երեխաները քնած էին լինում, ուշ գիշերին վերադառնում էինք՝ նրանց քնած տեսնում։

Էս հանքահոր կառուցող որմնադիրը էի, Առաքելը ձուլող վարպետ, իսկ փոքր եղբայրս՝ Սմբատը, հորատող էր։ Պղնձաքարը փոքրիկ կողովների մեջ դարսած երեխաները դուրս էին բերում հանքից։

Բանվորները հանքի ներսի անպետք քարերն էլ էին շալակով դուրս տանում։ Մի բանվոր օրական 15—20 կոպեկ աշխատավարձ էր ստանում։ Հասակավոր բանվորների աշխատանքը կատարող անչափահասներին ավելի քիչ էին վճարում։

Այս բոլորը բավական չէր, հանքատերերը նոր օրենք հնարեցին։ Ամենափոքր հանցանքի համար անխիղճ ձևով տուգանում էին։

— Ո՞վ էր տուգանողը։

— Ո՛վ ասես. շատ է պատահել, որ ամբողջ ամիսը աշխատել եմ, բայց ոչ մի կոպեկ չեմ ստացել։ «Ինչո՞ւ ինձ փող չի գրված», հարցնում էի ես։ «Տուգանված ես», պատասխանում էին նրանք։

Մենք ստրուկների նման էինք ապրում։ Երբ հանքից դուրս էինք գալիս, շորերս ու երեսներս մրից սևանում էին. միայն ատամներս էին սպիտակին տալիս. Բաղնիք էլ չկար, որ մաքրվեինք։

Մեր Ղափանի հարստության համը ֆրանսիացիներն էլ առան։

Մի օր բանվորներն սկսեցին իրար ականջի փսփսալ, թե՝

— Բա չես ասի՝ ֆրանսիացիները բանվորներին հանքի ներսում աշխատեցնում են 10 ժամ, իսկ դրսում՝ 12 ժամ. Ռոճիկի դիմաց ալյուր և շաքար են տալիս։ Հանքից գործարան շալակով տարած պղնձաքարի համար էլ են վճարում։

—Է՛հ, բանվոր մարդ ենք, որտեղ լավ է՝ էնտեղ էլ կաշխատենք, — ասացինք մենք ու խոսք մեկ արած գնացինք օտարի հանքերը։

Ֆրանսիացիներն առաջին օրը մեզ չաշխատեցրին, բայց ասացին, որ այդ օրվա փողն էլ կտան։

Մեկ էլ մեր ձեռքը թղթեր տվին և հայտարարեցին.

— Պիտի ստորագրեք։

Բանվորների մեջ գրագանաչ մարդ չկար։ Պետերը իրենք գրեցին, իրենք էլ ստորագրեցին։ Դա տասը տարվա պայմանագիր էր։



Ֆրանսիացիների մոտ աշխատանքի եկող բանվորների թիվն օրեցօր ավելանում էր։ Դրա պատճառով մի քանի ուրիշ հանքեր փակվեցին։ Տերերը ստիպված՝ էժան գնով հանքերը ծախեցին ֆրանսիացիներին։

Մի օր էլ աշխատանքի տեղը հասանք տեսանք՝ ադմուկ է։

— Ի՞նչ է պատահել,—հարցնում էինք իրար.

— Էլ ինչ պիտի պատահի. Հակոբն ուզում է գնալ Բաքու, եղբայրը հիվանդ է, իսկ կառավարիչը չի թողնում։

— Բա ի՞նչ է ասում,—հարցրի ես։

— Ասում է՝ դու թուղթ ես ստորագրել, որ 10 տարի աշխատես։—Նոր գլխի ընկա, որ ֆրանսիացի հանքատերը մի փութ ալյուրով մեզ 10 տարով գնել է։

Հակոբը ջահելություն արավ, հրեց պղային ու դուրս պրծավ. բայց մի քանի ժամ հետո շղթաներով կապած նրան ետ բերին։

— Մեզ խաբել են,—ասում էին բանվորները։

— Որ դրանով պրծնենք՝ լավ է։

Ֆրանսիացի հանքատերերը աշխատանքի ժամերը հանքի ներսում դարձրին 11 ժամ, հանքից դուրս՝ 14 ժամ։

Դուք բախտավոր եք, իմ բալիկներ, որ այդպիսի օրեր չեք տեսել։ Ես ապրել եմ հարյուր քսան տարի, բայց միայն այս երեսուն տարին է, որ հասկանում եմ, թե ինչ է կյանքը։

— Պապի ջան, պապի՛, պատմիր մեր քաղաքի մասին։

— Կոլխոզ կազմակերպելու տարին այստեղ քաղաքի հետք էլ չկար. իսկ հիմի մեր քաղաքի մի ծայրից մյուսը ավտոն տասը րոպեում հազիվ է անցնում։ Երբ մենք դնում էինք բանվորական ակումբի պատերը, ուստա Աղաջանը հարց տվեց.

— Ա՛յ Օհան, եթե սա ակումբի շենք է, ինչո՞ւ է այսքան հեռու։

Հանգուցյալը որ կենդանի լիներ, կզարմանար։ Վաչագանի գետի երկու ափերին տարածվել է մեր գեղեցիկ քաղաքը։ Մի քանի տարի առաջ քաղաքից դուրս կառուցված բանվորական ակումբը, հիմի քաղաքի կենտրոնում է գտնվում։

Հին ժամանակ շինածը մատների վրա կարելի է հաշվել։ Մնացածը նոր է։

— Պապի՛, մինչև սովետական կարգեր հաստատվելը քանի՞ դպրոց կար Ղափանում։

— Ոչ մի դպրոց։ Առաջին դպրոցը կառուցել ենք սովետական իշխանության օրոք։ Հիմա դուք ասեք, թե քաղաքում քանի դպրոց, ակումբ ու գրադարան կա։

— Տասներեք դպրոց,—ասացին տղաները։

— Հինգ գրադարան և կուլտուրայի տուն, հիսուն կարմիր անկյուն,—ասացին աղջիկները։

— Ա՛յ, շատ ապրե՛ք, բալիկներ, երևում է, որ դուք նորի մասին ավելի լավ գիտեք, քան ես։ Հա մի նոր բան էլ հիշեցի.

Գեղատեղ թաղի մսուրի և ծննդատան շենքերը կառուցելիս, երկրորդ հարկի պատին նստած ծխում էինք։ Շենքից վերև, էնտեղ, որտեղ հիմա բանվորները անհատական շենքեր են կառուցել, խիտ անտառ էր։ Այդ ժամանակ մեր կողքին հրացան կրակեցին։ Մեկ էլ դուրս եկավ մի որսորդ կխտարը շալակին։ Հիմա այդ որսի տեղը քաղաք է...

— Իսկ կայարանի տեղն առաջ ի՞նչ էր։

— Կայարանից ձախ տների տեղը ավազուտ էր. իսկ երկաթգծի կայարանի տեղը աղաների հողն էր. ցորեն էին ցանում։ Այնտեղ, որտեղ հիմի գործարաններն են, օձեր էին ապրում։ Ոչ մի մարդ մենակ չէր կարող անցնել այդ վայրով։ Հիմա նայեցեք, քանի՜, քանի՜ գեղեցիկ և բազմահարկ շենքեր են կառուցված այնտեղ։

Ձեզնից ո՞վ չի հիշում։ Երեք տարի առաջ Օխչի գետի կողմերը ոչ մի տուն չկար։ Երեք տարում այնտեղ կառուցվել է մի նոր թաղ, մեր քաջ Հունանի անունով։

— Ես այնտեղ եմ ապրում, պապի։

— Դու ասա, ի՞նչ է կառուցվել այնտեղ։

— Թաղամասը ունի երկու փողոց, դպրոց, ակումբ և ավանի սովետի շենք։

— Իսկ խմելու ջուրը ո՞րտեղից էր գալիս։

— Երեսուն տարի առաջ բանվորները գետի ջուր էին խմում. իսկ հիմա քաղաքի ամեն փողոցում աղբյուր կա։ Երեսուն տարի առաջ Երևան, Բաքու կամ Թբիլիսի գնալու համար մեկ-երկու ամիս ոտքով ճամփա պիտի գնայիր։

Հիմա գնացք է գալիս Ղափան, օդանավ է թռչում։ Ուզում ես օդով թռիր. մի ժամից հետո Երևանում ես, ութ ժամից՝ Մոսկվայում։ Ուզում ես ավտոյով գնա, ուզում ես գնացք նստիր։

Այս մութ ձորերը հիմա գիշերն էլ է լույս, ցերեկն էլ։ Տուն չկա, որ էլեկտրական լույս չունենա։ Տուն չկա, որ ամեն օր Մոսկվայի ձայնը չլսի, շատ քիչ տուն կգտնեք, որ հեռախոս չունենա։ Քաղաքն ինչքան մեծանում է, այնքան գեղեցկանում է։ Ես ամեն օր տնից դուրս եմ գալիս, նայում եմ Ստալինի արձանին, նայում Լենինի արձանին և ուրախանում։

Հարյուր քսան տարեկան Օհան պապը նայեց հարազատ քաղաքին, փոքրիկ հարազատներին թևանցուկ արեց, ձեռքը բարձրացրեց ու շարունակեց.

— Նայեցեք մեր Խուստուփ սարին. նա իմ ասածների վկան է։ Երեսուն տարի առաջ այս սարերը, այս անտառները, այս դաշտերը, այս ջրերը, այս հանքերը, այս գործարանները մերը չէր, աղաներինն էր։ Անցան այդ ժամանակները։ Աշխատավոր ժողովուրդը խլեց և տվեց իմ թոռներին, ծոռներին։ Եվ միշտ հիշեցեք, որ այս բոլորը, մերն է հիմա, մերը։

Շնորհավոր այն մեծ մարդու նոր տարին, որ այս ամենը մեզ պարգևեց։



# ՄԵՐ ԴՐՈՇԸ

ՍԱՐՄԵՆ

Այդ օրն երբեք չեմ մոռանա իմ կյանքում.
Ամառային արևը նոր էր ծագում,
Խաղաղ քնից շաղոտ անտառը զարթնած՝
Հովից ճոճվում ու մրմնջում էր կամաց:
Ճամբարը ողջ լարված կանգնել էր դրսում,
Ուշքը լարած՝ սպասում էր, սպասում:
Հանկարծ մեկը արձակում է հրաման,
Մենք բոլորս զգաստ նայում ենք նրան.
«Այսօր պիտի բարձրացնի դրոշը
Մեր ժրաջան օղակավար Սիրուշը»...

Ծափերի տակ ես մոտեցա դրոշին,
Ինչպես թիթեռ, որ միշտ ձգտում է լույսին,
Հնչեց հիմնը հերոսության, հաղթության.
«Սովետական ազատ աշխարհ Հայաստան...»
Եվ ես նրա հնչյունների խաղի տակ
Բարձրացրի դրոշը մեր սուրբ ու թանկ:
Երբ նա հասավ կայմի բարձր կատարին,
Ծածանվելով նայեց արար աշխարհին,
Կարծես մարտում ես մի բարձունք տիրեցի,
Նրա գլխին կարմիր դրոշ պարզեցի:

Այդ օրն երբեք չեմ մոռանա իմ կյանքում.
Թող միշտ շողա մեր դրոշը աշխարհքում:

# ԱՐՇԱՎ ԴԱՀՈՒԿՆԵՐՈՎ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

*Կարպիսն այդ օրը ժամանակից շուտ արթնացավ: Մոտենալով լուսամուտին նա չկարողացավ զսպել իր ուրախ ճիչը: Դրսում ամեն ինչ սպիտակ էր: Գիշերը տեղացող առատ ձյունն սպիտակ սավանով ծածկել էր շրջակայքը:*

*Քիչ հետո նա դահուկներն ուսին դրած քայլում էր դպրոց տանող ճանապարհով:*

*Երևանի 17-րդ դպրոցի բակը գնալով ավելի էր աշխուժանում: Հավաքվում էին առաջին արշավի մասնակիցները:*

*— Շարվե՛ք,— հնչում է արշավախմբի հրամանատարի խրոխտ հրահանգը:*

*Քսան պատանի դահուկավոր, դահուկներն ուսերին դրած, իրենց հրամանատարի շուրջն են հավաքվում: Նրանք բոլորն էլ թեթև, բայց տաք զգեստներ են հագել, գոտիներից կապել են փոքրիկ պայուսակներ՝ նախաճաշով և արշավի այլ պարագաներով լեցուն:*

*— Ժամը ութն է,— ասում է դպրոցի ֆիզկուլտուրայի ուսուցիչ ընկեր Մինասյանը:— Արշավի մարշրուտը մանրամասն մշակված է: Արշավի ժամանակ մենք անցնելու ենք անտառների միջով, հարթ տարածություններով, և հասնելու ենք կենդանաբանական այգու մոտ գտնվող ձորը: Ճանապարհին անպայման ուսումնասիրելու ենք շրջակայքը:*

*Պատանի դահուկավորները կանոնավոր շարքերով սկսեցին քայլել առաջ:*

*Քանաքեռի խճուղու կեսից նրանք թեքվեցին դեպի աջ և մի նեղ փողոցով անտառը մտան:*

*— Հագնել դահուկները,— հնչում է հրահանգը:*

*Պիոներները դահուկներն արագ ամրացրին ոտքերին:*

*— Որքա՜ն գեղեցիկ է անտառը. ամենուրեք ձյուն է ու ձյուն,— ասում են տղաները:*

*Պատանի դահուկավորները մեծ ճարպկությամբ անցնում էին ձյունածածկ ծառերի արանքով: Արշավախմբի երկար շարասյունը հաղթահարելով թեքությունը և այլ դժվարություններ դուրս եկավ Քանաքեռի սարահարթը:*

*Նրանք գտնվում էին Ստալինի քանդակ-մոնումենտի մոտ: Տղաները չէին կարողա-*

նում բառեր գտնել արտահայտելու իրենց հիացմունքը, դիտելով մեծ առաջնորդի հսկայական արձանը։

— Այժմ դեպի աջ, ուղղությունը դեպի կենդանաբանական այգին,—գոչեց առջևից ընթացող Վարուժանը։

Ճանապարհն սկսում էր ցած իջնել։ Պետք էր տեսնել, թե ինչպիսի վարպետությամբ էր Վարուժանը դահուկներով սահում։ Նա արագ թեքումներ կատարելով միշտ խուսափում էր ծառերից ու քարերից։

Տղաները նույնպես սահելով ներքև էին իջնում։ Նրանցից ոմանք երբեմն ընկնում էին, սակայն իսկույն ոտքի կանգնելով շարունակում էին ճամփան։ Շուտով նորից վերելք սկսվեց։ Հարկավոր էր հանգիստ և ճիշտ կերպով դասավորել ուժերը, որպեսզի հնարավոր լիներ հաջողությամբ կատարել և՛ վերելքը, և՛ վայրէջքը։ Երբ դահուկավորները հասան բլուրի գագաթը, խարույկ վառեցին և սկսեցին նախաճաշել։

— Պատրաստվե՛լ վայրէջքի և թռիչքների։

— Իսկ ի՞նչպես պետք է թռչել,—հարցրեց Հարությունը։

— Շատ պարզ։ Այդ մասին դու կարող էիր չհարցնել, եթե ավելի կանոնավոր կերպով հաճախեիր դահուկային սեկցիայի պարապմունքին։ Բայց ոչինչ, կնայես մյուսներին և կվարժվես։

— Առա՛ջ, ո՞վ է առաջինը,—բացագանչեց ընկեր Մինասյանը։

— Ա՛յ, արդեն Կարպիսը սլանում է. դե՛, տղաներ, ձեզ տեսնեմ,

Արագ պոկվելով տեղից, տղաներից մեկը ամբողջ թափով սլացավ Կարպիսի ետևից։

— Վարուժանն է, նա անպայման ուզում է հասնել Կարպիսին և անցնել նրանից,—ասաց տղաներից մեկը։

— Պարզ է, սովետական ֆիզկուլտուրնիկը միշտ պետք է ձգտի առաջ, միշտ առաջ։

— Տեսեք, ինչպիսի վարպետությամբ Կարպիսը փոսի վրայից թռավ, կեցցե՛ս Կարպիս, կեցցե՛ս։

Եվ իրոք, արագ թափով մոտենալով փոսին, Կարպիսը մի երկու անգամ էլ փայտերով իրեն առաջ հրեց՝ ու փայտերը վեր բարձրացնելով, թռավ անցավ փոսի վրայով։

Պատանի դահուկավորներից շատերը հետևեցին նրա օրինակին։ Բայց Հարությունն ու Վոլոդյան սկզբում չկարողացան և ընկան։

— Անպայման պետք է թռչեմ,—ասում էր Վոլոդյան։

Եվ նա նորից փորձեց, նորից ընկավ ու



*նորից բարձրանալով բլրի գագաթը, արագորեն ներքև սլացավ։*

*— Ձեռքերդ վե՛ր, մարմինդ առա՛ջ,— հիշեց նա ֆիզկուլտուրայի ուսուցչի խորհուրդը։ Այս անգամ ներքևում հավաքված ընկերները ուռա բացականչություններով դիմավորեցին Վոլոդյային։*

*Մի քանի փորձերից հետո հաջողությամբ թռան նաև Հարությունը և Անդրանիկը։ Երբ բոլորն արդեն ներքև էին, արշավախումբը շարունակեց ճանապարհը։*

*Այսպես պատանի դահուկավորները հասան կենդանաբանական այգի։ Այստեղ նրանք մեծ հետաքրքրությամբ ծանոթացան, թե ինչպես են զանազան երկրներից բերված կենդանիները ապրում ձմռան ամիսներին։ Այգում մի ժամ մնալուց հետո պատանի տուրիստները բռնեցին քաղաք տանող ճանապարհը։*

*Շուտով երևաց քաղաքը։*

*Մեծ բավականություն և հետաքրքրություն առաջացրեց արշավը տղաների մեջ։ Այդ մասին նրանք հաջորդ օրը մեծ ոգևորությամբ պատմում էին իրենց ընկերներին։ Շատերը որոշեցին հաջորդ կիրակի էլ նույնպիսի արշավ կազմակերպել։*




*ՍՏԵՓԱՆ ՆՈՍՈՎ*　　*Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Միշա Կրուգլովը ու Լյոնյա Պոտապովը դասերը չէին սովորել։ Երեկ ճաշից հետո նրանք գնացին ձուկ բռնելու և ուշ երեկոյան տուն վերադարձան։ Գետում շատ ձկներ կային և տղաները չէին ուզում հեռանալ գետափից։ Առավոտյան նրանք դպրոցում ընկերներից հազիվ իմացան, թե այսօրվա համար ինչ դասեր են տրված։

Անատոլի Իվանովիչը մտնելով դասարան ողջունեց ու մի հայացք գցեց իր բարեկամների վրա։

— Կորանք,— շշնջաց Լյոնյան Միշային։

Մինչև որ Անատոլի Իվանովիչը դասավորեց գրքերն ու դասամատյանը, Լյոնյան քերականության դասագրքից երկու թերթ պոկեց և աննկատելիորեն դրեց սեղանի վրա։

Միշան ուզում էր թղթերը վերցնել, բայց այդ ժամանակ Անատոլի Իվանովիչը կանչեց.

— Պոտապո՛վ։

Լյոնյան ոտքի կանգնեց։

—Քերականությունից այսօր ի՞նչ է տրված։

— Բառի արմատ, ածանց ու վերջածանց։

— Պատասխանիր։

Լյոնյան ոչինչ չէր հիշում։ Նա չորս կողմն էր նայում։ Ճիշտ է, երեկ լսել էր ուսուցչի բացատրությունը, բայց անիծված ձկները ոչինչ չէին թողել նրա գլխում։

— Արմատ կոչվում է բառի՛... Արմատ...

Նա այլևս ոչինչ չէր կարողանում ասել։

— Կրուգլո՛վ, ընկերոջդ օգնիր, — ասաց Անատոլի Իվանովիչը։

Սովորաբար, երբ Միշան դաս էր պատասխանում, գրքին կամ ընկերոջ տետրակին չէր նայում։ Սա նրա համար օրենք էր։ Նա չէր սիրում նաև հուշել։ Միշան ուրիշ ժամանակ ուղակի կասեր, որ դասը չի սովորել. բայց այժմ նրա աչքերի առաջ դրված էին թերթերն ու քերականության բոլոր օրենքները։ Միշան, իր կամքին հակառակ, աչքի պոչով նայեց։ Նա տատանվում էր՝ պատասխանել, թե՞ ոչ. բայց հետո մտածելով, որ տեղից պատասխանելու համար Անատոլի Իվանովիչը հավանաբար գնահատական չի նշանակի, դասը պատմեց։

—Լավ,—քաջալերեց Անատոլի Իվանովիչը։

Լյոնյա Պոտապովը փորձեց բացատրել, թե

ինչ է վերջածանց, բայց նորից մոլորվեց:
— Կրուգլո՛վ, օգնիր:
Միշան շատ լավ էր պատասխանում: Այժմ չէր էլ կարող չպատասխանել: Միշան աչքի պոչով կարողացավ կարդալ, թե ինչ է վերջածանցը ու պատասխանեց:
— Ինչ արած,—ասաց Անատոլի Իվանովիչը,—Կրուգլովը դասը սովորել է, իսկ Պոտապովը՝ ոչ: Տեսնեմ օրագիրդ, Պոտապով:
Լյոնյան ստացավ երկու, իսկ Միշան՝ հինգ: Միշան սկզբում ուրախացավ, որ հինգ է ստացել, բայց հետո տխրեց: Ինչո՞ւ ուրախանալ: Այն բանի՞ համար, որ նա գրքին թաքուն նայելով պատահմամբ հի՞նգ ստացավ:
Լյոնյան հոնքերը կիտած, տխուր նստել էր: Նա մատը այնպես էր դրել երկուսի վրա, որ ասես ուզում էր ջնջել:
— Ուրախանում ես հա՞,—խեթ-խեթ նայելով Միշայի օրագրին հարցրեց նա.—ինքդ էիր ասում՝ հավաքիր թերթերը, հավաքի՛ր...
Միշան օրագիրը իսկույն խցկեց պայուսակը:
Հաջորդ օրվա դասերը նա բարեխղճորեն պատրաստեց: Միշան հույս ուներ, որ Անատոլի Իվանովիչը նորից կհարցնի և այն ժամանակ, ինչպես հարկն է, իբր կպատասխանի: Լյոնյա Պոտապովն էլ լավ պատրաստվեց:
Անատոլի Իվանովիչը մյուս օրը Լյոնյային դաս հարցրեց: Լյոնյան ոտքի կանգնելով ուղղեց բլուզը, ձգեց գոտին և առանց շտապելու, հանգիստ պատասխանեց.
— Արմատ կոչվում է բառի այն հիմնական մասը...
Դուք պետք է տեսնեիք, թե նա ինչքան լավ էր պատասխանում: Հուզմունքից նրա աչքերը փայլում էին: Անատոլի Իվանովիչն ինչպես որ ձեռքը տարել էր դեպի թանաքամանը, այնպես էլ մնացել էր:
— Ա՛յ, թե ինչպես կպատասխանեն, իսկական հինգ,—շշնջացին աշակերտները:
— Իհարկե հինգ...
Ուսուցիչը Միշային դաս չհարցրեց:
Միշան ինչքան շատ էր նայում հինգին, այնքան գնահատականն անտանելի էր դառնում: Ահա ուրիշ գնահատականները և՝ հինգ, չորս և մի երեք: Միշան այս բոլորը արդար աշխատանքով էր ստացել. բայց երեկվա հինգը խորթ էր:
Տանը հայրը հարցրեց.
— Գործերդ ո՞նց են, Միշա՛:
— Ոչինչ:



— Ինչպիսի՞ գնահատականներ ես ստանում:
— Լավ:
— Մի ցույց տուր օրագիրդ: Օհո՛, բերականությունից՝ հինգ, այդ ինչպե՞ս է,—կատակելով ասաց հայրը:
— Անտեղի են նշանակել:
— Ինչպե՞ս թե անտեղի, Անատոլի Իվա-



նովիչն անհիմն կերպով գնահատական չի նշանակում: Ես նրան ճանաչում եմ:

Հոր խոսքերը Միշային համոզեցին: Նա իսկույն օրագիրը խցկեց պայուսակը և ուսուցչի տունը գնաց:

Անատոլի Իվանովիչը տանն էր: Նա բանկոնը հագին նստել էր սեղանի մոտ և ստուգում էր աշակերտների տետրակները:

—Դո՞ւ ես, Միշա, ինչո՞ւ ես եկել. ի՞նչ կա:

— Անատոլի Իվանովիչ, գնահատականս ուղղեցեք:

— Ի՞նչ գնահատական:

— Քերականության:

— Մի՞թե դու երկուս ես ստացել. չէ՞ որ ես քեզ հինգ եմ նշանակել:

— Այո, բայց երկուս դարձրեք:

— Երկո՞ւս, ինչո՞ւ,— ժպտալով հարցրեց Անատոլի Իվանովիչը:

Միշան շփոթվեց ու կարմրեց և արագ-արագ վրա տվեց:

— Երբ երեկ դուք ինձ դաս հարցրիք, ես նայեցի գրքին, դասըս չէի սովորել: Ես և Լյոնյան գնացել էինք ձուկ որսալու:

— Ահա թե ի՜նչ: Լավ է, որ դեռ գնահատականը դասամատյանում չեմ նշանակել.— իսկ հիմա դասդ գիտե՞ս,— արդեն լուրջ հարցրեց Անատոլի Իվանովիչը:

— Գիտեմ:

Անատոլի Իվանովիչը հարցրեց Միշային: Նա բոլոր հարցերին պատասխանեց:

— Թող հինգը մնա. դասդ գիտես,—ասաց ուսուցիչը:

Միշան թեթև հառաչեց և օրագիրը մեկնեց:

— Անատոլի Իվանովիչ, խնդրում եմ հինգը ջնջեք: Ա՛յ այստեղ, թվանշանի ծայրը երկարացրեք, իսկ հետո կետը այնպես դրեք, որ նորն ստացվի:

Անատոլի Իվանովիչը չմերժեց:

— Հիմա լավ է,—ասաց Միշան և զգույշ փչեց գնահատականի վրա, որ արագ չորանա,—այս արդեն իմ գնահատականն է:

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*



# Հերոսի ԿՅԱՆՔԸ



Նկ. Ան. ԶՈՐՊԱՋՅԱՆԻ

Դպրոցի բակում հավաքված տղաներն ուրախ խոսում են, կատակում: Նրանց մոտենում է Սերգեյը, որի գլխարկին ամրացված է մի նոր նշան:

— Տեսե՛ք, տեսե՛ք, Սերգեյն օդաչու է դարձել,— գոչում է Լևոնը,— եկեք շնորհավորենք:

Վլադիմիրը, որ ավելի շատ ծովն է սիրում, անմիջապես հավաքում է իր մյուս ընկերներին և առանձնանում: Տղաները բաժանվում են երկու խմբի: Ովքեր սիրում են ծովը, Վլադիմիրի մոտ են գնում, իսկ օդաչուական խումբը միանում է Սերգեյին:

Սերգեյը մասնակցում է դպրոցի մոդելիստների խմբակին և հնարում նոր մոդել: Թբիլիսիում կազմակերպվում է պատանի մոդելիստների մրցություն: Դպրոցը Սերգեյին ուղարկում է մասնակցելու այդ մրցությանը և նա այնտեղ մրցանակ է շահում: Միջնակարգ կրթություն ստանալուց հետո Սերգեյն ընդունվում է Երևանի Աերոակումբի օդաչուական դպրոցը: Սերգեյի մյուս ընկերներն էլ ընդունվում են բարձրագույն ուսումնական հաստատություններ սովորելու: Մի անգամ Միքայելը, Վլադիմիրը, Լևոնը այցելում են Սերգեյին:

— Մոռանում եք, ուշ-ուշ եք գալիս,— կշտամբում է Սերգեյը:

Սերգեյի խոսքն ընդհատելով Լևոնը գրպանից հանում է մի գեղեցիկ օդանավ և դնում սեղանին:

— Սա մի ապացույց, որ քեզ չենք մոռանում,— ծիծաղելով ասում է Լևոնը, իսկ Վլադիմիրը արծաթազօծ մի նավակ է նվիրում Սերգեյին:

Սերգեյը մեկնում է Խերսոն քաղաքը ուսումը շարունակելու: Եվ ահա նա օդաչու է: Սկսվեց Հայրենական Մեծ պատերազմը: Սովետական հազարավոր երիտասարդներ ոտքի ելան պաշտպանելու հարազատ հայրենիքը: Ռազմաճակատ մեկնեց նաև Սերգեյ Բուռնազյանը: Նա մասնակցեց Ստալինգրադի ճակատամարտին:

Սերգեյի կործանիչի թևերին 28 աստղ կա նկարած: Դա ցած գցած ինքնաթիռների հաշիվն է: Սերգեյն անսահման կերպով սիրում էր իր հայրենիքը և զոհվեց նրա ազատության համար մղվող մարտերում: Ցուցաբերած քաջության համար Բուռնազյանն արժանացավ Սովետական Միության Հերոսի բարձր կոչման:

Ահա Պուշկինի անվան դպրոցը, որն ավարտել է անվանի հերոսը:

Հնչում է զանգը: Աշակերտներն շտապում են իրենց դասարանները: Մի աշխույժ աղջիկ մոտենում է այն նստարանին, որի վրա տարիներ առաջ նստել է Սերգեյը:

Աղջիկն արտասանում է.

Մեծ առաջնորդին խոստանում եմ ես՝
Միշտ առաջ գնալ, ձգտել, սովորել,
Մեր հայրենիքը սիրել ճիշտ այնպես,
Ինչպես մեր հերոս Սերգեյն է սիրել:

Ստալինյան բազե Սերգեյ Բուռնազյանի հերոսական կյանքը պատկերված է բանաստեղծ Ռ. Ղարիբյանի «Խիզախ Թևավոր» պոեմում:

Կարդացեք այդ գիրքը:

Դ. ԳԱԼՃՅԱՆ

# ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽԱՂ

*Ձեր ընկերներից երեքը՝ Լևոնը, Սուրիկը և Շուշիկը թող իրենց մտքում մեկական թիվ պահեն՝ 1, 2 կամ 3։ Դրանից հետո թող Լևոնը իր մտքում պահած թիվը կրկնապատկի, Սուրիկը բազմապատկի 9-ով, իսկ Շուշիկը՝ մեծացնի տաս անգամ։*

*Ապա թող նրանք ստացած երեք թվերը մտքում գումարեն և ձեզ ասեն նրանց գումարը, օրինակ 35։ Հենց որ իմանաք թվերի գումարը, իսկույն կարող եք ասել, որ Լևոնը մտքում պահել էր 3, Սուրիկը՝ 1, իսկ Շուշիկը՝ 2։*

*— Ի՞նչ հետաքրքիր խաղ է,— կասեն երեխաները։*

*— Մե՛կ էլ կրկնենք։*

*Այդ խաղը կարելի է ձևափոխել և այսպես։ Համարակալեցեք երեք աթոռ՝ № 1, № 2 և № 3։ Ապա ձեր աչքերը կապած երեք հոգու առաջարկեցեք նստել ուզած աթոռի վրա։ Ցոլիկը թող իր աթոռի համարը կրկնապատկի, Շամրիկը՝ իր աթոռի համարը բազմապատկի 9-ով, իսկ Գևորգը՝ 10 անգամ մեծացնի։*

*Հենց որ իմացվի թվերի գումարը՝ 49, կասեք, որ Ցոլիկը նստած է № 1, Շամրիկը՝ № 3, իսկ Գևորգը՝ № 2 աթոռին։ Ուրիշ թվեր վերցնելով դուք կարող եք խաղը կրկնել շատ անգամ։*

*Ուզո՞ւմ եք ես ձեզ բացատրեմ այդ խաղի գաղտնիքը։ Դրա համար 60-ից պետք է հանենք այն թվերի գումարը, որն ասում են ձեր ընկերները։ Մնացածը բաժանենք 8-ի։ Քանորդը ցույց կտա այն թիվը, որը կրկնապատկված է, մնացորդն էլ՝ այն թիվը, որը բազմապատկված է 9-ով։ Այսպես օրինակ. առաջին խաղի ժամանակ թվերի գումարը 35 էր։ $60-35=25$։ $25:8=3$, իսկ մնացորդը՝ 1։ Նշանակում է Լևոնը մտքում պահել էր 3, որովհետև այդ թիվը կրկնապատկված էր. Սուրիկը՝ 1, որովհետև այդ թիվը բազմապատկված էր 9-ով, իսկ Շուշիկն էլ՝ 2։*



*Երկրորդ խաղի ժամանակ թվերի գումարը 49 էր։ $60-49=11$։ $11:8=1$, իսկ մնացորդը՝ 3։ Նշանակում է՝ Ցոլիկը նստած էր № 1 աթոռին, որովհետև այդ թիվն էր կրկնապատկված, Շամրիկը՝ № 3 աթոռին, քանի որ այդ թիվը բազմապատկված էր 9-ով, իսկ Գևորգը՝ № 2 աթոռին։*

*Կազմեց Ա. ԱԹԱՆԱՍՅԱՆ*




## „ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՐԵՆԻ ԵՐԿՐՈՒՄ“

Լրացնելով չայնվորդի վանդակները, դուք կգրեք Սովետական Միության մի շարք քաղաքների անունները։ Առաջինը մեր Միության մայրաքաղաքի անունն է. նրա վերջին տառը հաջորդ քաղաքի անվան առաջին տառն է։ Ուշադիր դիտելով քարտեզը, դուք կարող եք գտնել բոլոր պահանջվող քաղաքների անունները և լրացնել չայնվորդը։

*Առաջարկ և նկար՝ Գ. ԱՐԱՄՅԱՆԻ*




## ԿՐՈՍՎՈՐԴ

Լրացրեք այս վանդակներն այնպես, որ ստացվեն ժամանակի բոլոր բաժանումները:



## ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԸ

«Հոկտեմբերիկ» ամսագրի 9-րդ համարում տպված ժամանցի պատասխանն այսպես է.

Ճիշտ պատասխանել են.

Գալյա Ղադինյանը (Ստեփանավան), Սանդրո Մանուկյանը (Ղուկասյան, Լենինանցք գյուղ), Աիդա Հովհաննիսյանը (Ղափան), Մարատ Պատվականյանը (Սիսիան) և Ջուլիետա Սմբատյանը (Զորագէս):

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
«Կոմունիզմի մեծ կառուցումները»

Նկար՝ Բ. ՔՈԼՈՉՅԱՆԻ

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

## „ՊԻՈՆԵՐ" ԱՄՍԱԳՐԻ 1951 ԹՎԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

1 տարին 24 ռուբ.

6 ամիսը 12 ռուբ.

3 ամիսը 6 ռուբ.

## ՇՏԱՊԵՑԵՔ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ

*

„ПИОНЕР"

№ 1

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, январь, 1951 г. Ереван

Պատ. խմբագիր՝ ԳԱՐ. ՍԵՎՈՒՆՑ

Խմբագրական կոլեգիա՝ ՍԻԼՎԱ, Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Մ. ԴԱՎԹՅԱՆ, Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ, Մ. ՀԱՅԿԱԶՈՒՆԻ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ, Ս. ՕՀԱՆՅԱՆ

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 00259, Պատվեր 10. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ. Արտադրության է հանձնված 27/XII-50 թ.: Ստորագրված է տպագրության 18/I-51 թ.:

Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.:

ԳԻՆԸ 2 Ռ.

# Ո՞ՎՔԵՐ ԵՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԸ

Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ




Նայեցեք այստեղ նկարված գրքերին և գտեք թե ո՞վքեր են հեղինակները: